ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1963

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1963 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ — *Մեր դրոշը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմն է* . 3

ՀԱՆՈՒՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՈՒ ՊԵՏԱԿԱՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ

Ե. ԱՍԾԱՏՐՅԱՆ — *Պարտիական-պետական վերահսկողությունը գործողության մեջ* . . . . . . . . . . . 10

Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ — *Նախ և առաջ հանրային շահերը* . . . . 18

ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ-ՀԱՐՁԱԿՈՂԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ
ՀԱՂԹԱՆԱԿԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

Հ. ԱՍԼԱՆՅԱՆ — *Հակամարքսիզմի ձախորդությունները* . . . . 30

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ — *Առաջնորդների հեղինակության հարցը մարքսիզմի հայեցակետով* . . . . . . . . . 42

*Գրական ժառանգության հարցի առթիվ* . . . . . . 52

ՀՈԴՎԱԾՆԵՐ ՈՒ ԵԼՈՒՅԹՆԵՐ

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ — *Արտաաշխատանքային ժամանակը և դրա օգտագործման ռացիոնալացումը* . . . . . . . . 60

Ա. ԼՅՈՒԼԻԿՅԱՆ — *Սպորտը մասսաներին* . . . . . . 66

Հ. ԱՎԱԳՅԱՆ, Լ. ԱԴԱՄՅԱՆ — *Հողի արդյունավետ օգտագործման պատուղները* . . . . . . . . . 74

Ա. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ — *Սոցիալիստական ազգերի հատկանիշների հարցի շուրջը* 78

ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

*Պարտիական օրգանների հաշվետվություններն ու ընտրությունները* . 87

Խ. ՍԱՖԱՐՅԱՆ — *Ջօգտագործված ռեզերվներ* . . . . . 90

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

Գ. ԳԱԼՈՅԱՆ — *«Աշխատանքի ազատագրություն» խումբը և Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժումները* . . . . . . . 93

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

Ս. ՊԱՊՅԱՆ — *Բոննը խաղաղության թշնամին է* . . . . . 101

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ — *Սխալ մտածելակերպի վերականգնման փորձ* . . 107

## СОДЕРЖАНИЕ


**Передовая** — Наше знамя — творческий марксизм-ленинизм . . . . . . . . . . 3

**За высокую партийную и государственную дисциплину**

**Е. Асцатрян** — Партийный и государственный контроль — в действии . . . . . . 10
**Б. Мурадян** — Общественные интересы — прежде всего . . . . . . . . . . 18

**Идейно-наступательная борьба — залог победы коммунизма**

**Г. Асланян** — Злоключения антимарксизма . . 30
**Р. Варданян** — Об авторитете вождей с марксистской точки зрения . . . . . . . 42
К вопросу о литературном наследстве . . . 52

**Статьи и выступления**

**Г. Петросян** — Внетрудовое время и его рациональное использование . . . . . . . . 60
**А. Люликян** — Спорт — массам . . . . . 66
**Г. Авакян, Л. Адамян** — Плоды эффективного использования земли . . . . . . . . 74
**А. Егиазарян** — К вопросу о признаках социалистических наций . . . . . . . . . 78

**Партийная жизнь**

Отчеты и выборы партийных органов . . . . . 87
**Х. Сафарян** — Неиспользованные резервы . . . 90

**Знаменательные даты**

**Г. Галоян** — Группа «Освобождение труда» и революционное движение в России . . . . . . 93

**Международная жизнь**

**С. Папян** — Бонн — враг мира . . . . . . 101

**Рецензия и критика**

**Г. Габриелян** — Попытка восстановления ошибочной концепции . . . . . . . . . 107




# ՄԵՐ ԴՐՈՇԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄՆ Է

Այս տարվա հուլիսի 14-ին Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բաց նամակով դիմեց Սովետական Միության բոլոր պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին և Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի 1963 թ. հունիսի 14-ի նամակի կապակցությամբ շարադրեց կոմունիստական շարժման արմատական պրոբլեմների իր ըմբռնումն ու տակտիկան:

Ինչպես հայտնի է, վերջին տարիներին Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը միջազգային կոմունիստական շարժման կարևորագույն հարցերում հակադրվում է Սովետական Միության կոմունիստական պարտիայի լենինյան գծին, ամբողջ կոմունիստական շարժմանը: Սովետական Միության կոմունիստական պարտիան արել է իրենից կախված ամեն ինչ տարաձայնությունները հանգամանորեն ու համբերատար քննարկելու և հարթելու համար, ընդ որում առաջարկվել էր ձեռնպահ մնալ միմյանց դիրքերի հրապարակային քննադատությունից, որպեսզի կրքեր չբորբոքվեն և չստեղծվի անցանկալի նյարդային մթնոլորտ: Սակայն Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը, անգամ այն բանից հետո, երբ համաձայնություն էր կայացված երկու կողմի ներկայացուցիչների հանդիպում ունենալու և տարաձայնությունները քննարկելու համար, հրապարակեց ՍՄԿՊ Կետկոմին ուղղված նամակը, որում բացի հին տարաձայնությունները շարադրելուց, նոր մեղադրանքներ են բարդվում ՍՄԿՊ և եղբայրական մյուս կոմունիստական պարտիաների վրա:

Սովետական Միության կոմունիստական պարտիայի անդամները, ամբողջ սովետական ժողովուրդը, կոմունիստական իդեալներով տոգորված մարտիկները ամբողջ աշխարհում խոր ափսոսանքով և միաժամանակ խոր վրդովմունքով ծանոթացան Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարության անարժան վարքագծին, որով ձգնում են ամեն կերպ նսեմացնել ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակի համար, ամբողջ աշխարհում խաղաղության և սոցիալիզմի համար սովետական ժողովրդի, լենինյան մեծագործ մեր պարտիայի մղած պայքարի պատմական նշանակությունը, նրա տեսական դրույթները: Մարքսիզմ-լենինիզմի «համընդհանուր ճշմարտությունը» պաշտպանելու, ռևոլյուցիոն տեսությունը «պարզացնելու» քողի տակ ՉԿՊ Կենտկոմի նամակը հանդիսանում է դոգմատիզմի ու ռևոլյուցիոն ֆրազյորության մի արտասովոր խառնուրդ:

Սովետական Միության կոմունիստական պարտիայի, մյուս եղբայրական պարտիաների անդամները, սովետական ժողովուրդը միահամուռ կերպով հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի Բաց նամակին, որը հիմնովին հերքում է ՉԿՊ-ի

ղեկավարության կրպարտչական մեղադրանքները ու տեսական հավակնությունները և միաժամանակ ամբողջ աշխարհի առջև պարզ ու մեկին շարադրում է Սովետական Միության կոմունիստական պարտիայի՝ համաշխարհային կոմունիստական շարժման առաջամարտիկի կուռ հայացքները՝ ժամանակակից պատմության արմատական հարցերի նկատմամբ:

Տարաձայնությունները մի կողմից՝ Չինաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի և, մյուս կողմից՝ Սովետական Միության կոմունիստական պարտիայի, ամբողջ միջազգային կոմունիստական շարժման միջև վերաբերում են արդիականության արմատական հարցերին: Դրանք ժողովուրդների կենսական շահերը շոշափող հարցերն են՝ պատերազմի և խաղաղության, համաշխարհային սոցիալիստական սիստեմի խաղացած դերի ու զարգացման, «անձի պաշտամունքի» գաղափարախոսության ու պրակտիկայի դեմ մղվող պայքարի, համաշխարհային բանվորական շարժման և ազգային-ազատագրական պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի հարցերը:

Այս կարևորագույն հարցերում Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը ունի բոլորովին այլ հայացքներ, քան այն հայացքները, որոնք միահամուռ հավանություն են գտել միջազգային կոմունիստական շարժման կողմից և շարադրված են կոմունիստական պարտիաների խորհրդակցությունների փաստաթղթերում, ինչպես և կոմունիստական պարտիաների համագումարներում, պլենումներում, ծրագրային փաստաթղթերում, հատկապես Սովետական Միության կոմունիստական պարտիայի Ծրագրում:

Չինական ընկերները հակադրվելով միջազգային կոմունիստական կազմակերպությունների մշակած տեսական դրույթներին՝ պայքարի յուրահատուկ պրիոմներ են գործադրում: Նրանք,—ասված է ՍՄԿՊ Կենտկոմի Բաց նամակում,— արշավանք սկսելով արդիականության արմատական պրոբլեմների վերաբերյալ մարքս-լենինյան պարտիաների դիրքորոշումների դեմ, նախ, ՍՄԿՊ-ին և մյուս մարքս-լենինյան պարտիաներին վերագրում են այնպիսի հայացքներ, որպիսիք նրանք երբեք չեն արտահայտել, որոնք նրանց համար խորթ են. երկրորդ, նրանք աշխատում են կոմունիստական շարժման փաստաթղթերից վերցրած ֆորմուլների և դրույթների բանավոր ընդունումով քողարկել իրենց սխալ հայացքներն ու անճիշտ դիրքերը:

Հարց է առաջանում. ի՞նչն է չինական ընկերներին հարկադրել հրաժարվելու, բանավիճելու այն ազնիվ եղանակներից, որ միշտ հատուկ են եղել կոմունիստներին, և դիմելու նման արտառոց միջոցների: Դրան չինական ընկերներին հարկադրել է այն հանգամանքը, որ նրանք չեն կարող առանց իրենց մերկացնելու և մեկուսացնելու հանդես գալ արդի դարաշրջանի արմատական հարցերի վերաբերյալ կոմունիստական պարտիաների միասնական տեսակետի դեմ, չեն կարող բացե ի բաց ժխտել միջազգային կոմունիստական շարժման այն փաստաթղթերի դրույթները, որոնց տակ դրված է և իրենց ստորագրությունը: Հանդես գալ, օրինակ, խաղաղության համար պայքարի կամ խաղաղ գոյակցության սկզբունքի դեմ, կնշանակեր ծաղրի ենթարկել բազմամիլիոն մարդկանց սրբազան պայքարը, ժողովուրդների ջերմ ակնկալությունները, միջազգային բազմաթիվ դեմոկրատական կազմակերպությունների նպատակներն ու ազնիվ իդեալները: Ուստի և չինական ընկերները խոսքով ընդունում են խաղաղության համար պայքարի անհրաժեշտությունը, անգամ խաղաղ գոյակցության քաղաքականությունը: Բայց միայն խոսքով: Իրականում նրանք հանդես են գալիս ՍՄԿՊ և սովետական կառավարության, սոցիալիստական



լագերի երկրների կոմունիստական պարտիաների ամեն մի լուրջ գործնական քայլի ու տեսական դրույթի դեմ, որոնք իսկապես ծառայում են խաղաղության ամրապնդմանը, խաղաղ գոյակցության քաղաքականությանը: Չինական քննադատները Սովետական Միության կոմունիստական պարտիայի կողմից վարվող խաղաղ գոյակցության քաղաքականությունը պատկերում են որպես խաղաղ գոյակցություն շահագործող և շահագործվող ազգերի, շահագործող և շահագործվող երկրների, շահագործող և շահագործվող դասակարգերի միջև, կրպարտում են մեր պարտիային, որն իբր խաղաղ գոյակցության քաղաքականությունը դիտում է որպես մի ինչ-որ համապարփակ բան, «աստվածային հայտնություն» և մոռացության է տալիս դասակարգային պայքարը, ազգային-ազատագրական շարժումը և այլն: Չինական ընկերները փորձ անգամ չեն անում թեկուզ մեկ փաստ բերելու և իրենց ասածն ապացուցելու համար: Այդպիսի փաստեր չկան. նրանց մոտ կան միայն սխոլաստիկ, անհիմն, շինծու դատողություններ, հերյուրանքներ ու կրպարտություններ:

Ում հայտնի չէ, որ մարքս-լենինյան պարտիաները խաղաղ գոյակցության քաղաքականության ոլորտը սահմանափակում են տարբեր սոցիալական սիստեմների *միջպետական* հարաբերություններով, որ խաղաղ գոյակցության քաղաքականությամբ նրանք բնավ չեն նսեմացնում դասակարգային պայքարը, ազգային-ազատագրական շարժումը, ոչ միայն չեն ժխտում սոցիալիստական ռևոլյուցիայի անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը, այլ, ընդհակառակը, խաղաղ գոյակցության քաղաքականությունն օգտագործում են դասակարգային պայքարի ծավալման, սոցիալիստական ռևոլյուցիայի պայմանների հասունացման, ազգային ազատագրական շարժման խորացման համար: Խաղաղ գոյակցության առկայությամբ, արձանագրված է 81 կոմպարտիաների մոսկովյան Հայտարարության մեջ, բարենպաստ պայմաններ են ստեղծվում դասակարգային պայքարի ծավալման համար կապիտալիստական երկրներում, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ծավալման համար և, միաժամանակ, ռևոլյուցիոն դասակարգային ու ազգային-ազատագրական պայքարի հաջողությունները օժանդակում են խաղաղ գոյակցության ամրապնդմանը: Չինական ընկերները խաղաղ գոյակցության քաղաքականությունն ու դասակարգային պայքարը հակադրում են իրար, մինչդեռ ՍՄԿՊ-ն ու եղբայրական մյուս կոմպարտիաները կանգնած են մարքսիստական այն դրույթի վրա, ըստ որի ժամանակակից էտապում խաղաղության համար մղվող պայքարը և հասարակության առաջավոր ուժերի կողմից վարվող խաղաղ գոյակցության քաղաքականությունը դասակարգային պայքարի կարևորագույն ձևեր են, որ այդ քաղաքականությունն ապահովում է սոցիալիստական երկրների խաղաղ զարգացումը, նրանց քաղաքական, տնտեսական ու կուլտուրական վիթխարի նվաճումները, և որ սոցիալիստական լագերի դիրքերի ամրապնդումը, միջազգային հեղինակության աճը ամբողջ աշխարհում ծավալվող առաջադեմ շարժումների կարևորագույն բազան ու պայմանն է:

Մեր մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը պարտիային դաստիարակել է շահագործող դասակարգերի և նրանց պարտիաների գաղափարախոսության, կոմունիստական գաղափարախոսության աղճատման, նրա ռևիզիայի և ամլացման ամեն մի փորձի դեմ անհաշտ պայքար մղելու ոգով: Հավատարիմ իր մեծ առաջնորդի պատգամներին, Սովետական Միության կոմունիստական պարտիան միշտ ուշադրության կենտրոնում է պահում պարտիայի շարքերի գաղափարական միասնության ամրապնդումը, հետևողականորեն պայքարում է ամեն տեսակի գաղափարական դիվերսիայի, մարքս-լենինյան ուսմունքի ռևիզիայի, ինչպես և դոգմատիզմի և աղանդա-

բյուրոյի վերջերս արված հայտարարության մեջ, խաղաղության համար պայքարելը և այդ պայքարին ժողովրդի ակտիվ մասնակցությունն ապահովելը սրբազան պարտականություն է:

«Մարդկության պաշտպանությունը համաշխարհային նոր պատերազմից,— ասում է լեհական միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի քարտուղար Վ. Գոմուլկան,— սոցիալիստական սիստեմի և միջազգային կոմունիստական շարժման պատմական միսիան է: Մեր դարաշրջանում հենց դա է ամենից ավելի համոզեցուցիչ կերպով խոսում սոցիալիզմի գերապանցության մասին»: Այդպիսի գերապանցություն չեն ճանաչում չինական քննադատները և ոչ միայն չեն ճանաչում, այլև դա համարում են նահանջ մարքսիզմ-լենինիզմի դիրքերից: Իրականում մարքսիզմ-լենինիզմից նահանջում են հենց այդ հավակնոտ տեսաբանները, Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը, որի ներկայիս կոնցեպցիան ու գործողությունները պատերազմի և խաղաղության, խաղաղ գոյակցության ու մրցության, համաշխարհային սոցիալիստական սիստեմի դերի և զարգացման, համաշխարհային բանվորական շարժման և ազգային-ազատագրական շարժման ստրատեգիայի և տակտիկայի հարցերում Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հայտարարության մեջ իրավացիորեն գնահատվում է որպես պառակտողական գործողություններ, հակաիմպերիալիստական միասնական մարտական ֆրոնտի պառակտում, որպես վտանգավոր ավանտյուրիզմ:

Չինական կոմունիստական պարտիայի ղեկավարությունը գործնականում և իր խճճված տեսական դրույթներով խանգարում է սոցիալիստական լագերի, համաշխարհային բանվորական շարժման և ազգային-ազատագրական շարժման միասնական գործունեությանը, պաշտպանության տակ է առնում կոմունիստական շարժման մեջ պառակտիչ տարրերին, անհիմն ու զրպարտչական մեղադրանքներ է հարուցում կապիտալիստական երկրների կոմպարտիաներին:

Պակաս վրդովեցուցիչ չէ չինական ընկերների խիստ բացասական դիրքը անձի պաշտամունքի քննադատության նկատմամբ: Նրանք սխալ ու վնասակար են համարում անձի պաշտամունքի դեմ մղվող պայքարը, համարելով այն ղեկավարների, պարտիաների, դասակարգերի և մասսաների փոխհարաբերությունների խախտում: Բանից դուրս է գալիս, որ եթե որևէ անհատ, օգտագործելով իր դիրքը, ոտնահարում է պարտիայի, դասակարգի, մասսաների շահերը, ապա դա չպետք է քննադատվի, որ պետք է ներվեն պարտիայի հետ հաշվի չնստող այս կամ այն գործչի կամայականություններն ու հանցագործությունները, որպեսզի անսասան մնա ղեկավարի հեղինակությունը: Կոմունիստական պարտիան ղեկավարներին և առաջնորդներին բարձր է գնահատում իսկական, անձնազոհ աշխատանքով, բարոյական բարձր արժանիքներով, տեսական ու գործնական մեծ ծառայություններով, չշփոթելով այդպիսի բարձր հեղինակությունը մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ, սոցիալիստական կարգերի համար վնասակար անձի պաշտամունքի աննորմալ պրակտիկայի հետ: Անձի պաշտամունքը դատապարտված է բովանդակ կոմունիստական շարժման կողմից և իզուր են Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության ջանքերը վերականգնելու այն, ինչ մերժված է ու թաղված:

Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը չի հաշտվում ՍՄԿՊ XX, XXI, XXII համագումարների կողմից առաջադրված տեսական դրույթների հետ, որոնք իրենց լիակատար արտահայտությունն են գտել ՍՄԿՊ նոր Ծրագրում: Այն ինչ կատարվել, կատարվում է կյանքում, այն փոփոխությունները, որոնք կյանքի են կոչվել հասարակության կոմունիստական վերափոխման մեծ պրոցեսում և որոնց



իմաստավորման համար անհրաժեշտ է տիրապետել ստեղծագործական մարքսիզմի հիմունքներին, մարքսիզմի ոգուն՝ ռևոլյուցիոն դիալեկտիկային—չինական «տեսաբանների» համար կարծես թե գոյություն էլ չեն ունեցել: Նրանք լսել են, որ կապիտալիզմի և կոմունիզմի միջև ընկած է պրոլետարիատի դիկտատուրայի շրջանը և չեն էլ պատկերացնում, որ այդ դիկտատուրան կորցնում է իր պատմական անհրաժեշտությունը , սպառում է իր ֆունկցիաները, երբ այլևս չեն մնում այնպիսի դասակարգերը, որոնց ճնշելու, հնազանդեցնելու կարիք լիներ: Չինական «տեսաբանները» գտնում են, որ մինչև կոմունիզմի բարձրագույն փուլը պետք է մնա պրոլետարիատի դիկտատուրան, դրանով իսկ ցույց տալով, որ նրանք պատկերացում անգամ չունեն, որ բարեկամական աշխատավոր դասակարգերից կազմված ժողովուրդը կարող է կառավարել երկիրը, կարիք չզգալով որևէ դասակարգի դիկտատուրայի: Չինական «տեսաբանները» լսել անգամ չեն ուզում համաժողովրդական սոցիալիստական պետության հնարավորության մասին, կարծելով, ըստ երևույթին, որ հասարակությունը ապագայում *միանգամից* կթռչի պրոլետարիատի դիկտատուրայից դեպի մի վիճակ, որտեղ ոչ մի պետություն չի լինի:

Դոգմատիզմն ու սխոլաստիկան իրենց ծանր կնիքն են դրել Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության տեսական դատողությունների վրա: Կյանքի ռեալ պրոցեսների բազմակողմանի, լուրջ վերլուծման փոխարեն՝ ցիտատների միակողմանի ու տենդենցիոզ մեկնաբանություններ, ստեղծագործական դիալեկտիկայի փոխարեն՝ ընդհանուր դատողություններ, հանրահայտ մտքերի կրկնություններ, և այդ ամենը արտահայտված մի տոնով, որը ոչ մի առկայություն չի ընդունում — այսպիսին է Չինաստանի կոմպարտիայի նամակի բնորոշ գծերից մեկը:

Չինական ընկերներն ընթանում են վտանգավոր ուղիով և նրանցից է կախված՝ կհասկանա՞ն արդյոք միջազգային կոմունիստական շարժման շահերը և ձեռք-ձեռքի եղբայրական պարտիաների հետ, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի տակ, կմաքառեն հանուն մարքսիզմ-լենինիզմի վեհ իդեալների իրականացման, թե՞ կհամառեն իրենց սխալների վրա, կխախտեն ռևոլյուցիոն շարժման միասնական շարքերը, կհավակնեն մի ուրույն, արտոնյալ տեղ գրավելու միջազգային կոմունիստական շարժման մեջ: Եղբայրական կոմունիստական պարտիաները քննադատելով Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարության լուրջ սխալները, միաժամանակ ամեն ինչ անում են, որպեսզի օգնեն չինական ընկերներին՝ աչալրջորեն վերանայելու իրենց հայացքներն ու դիրքերը:

«ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն,— ասված է Կենտկոմի Բաց նամակում,— պարտիայի, սովետական ամբողջ ժողովրդի առջև ամենայն պատասխանատվությամբ հայտարարում է, որ մենք արել ենք և կանենք այն ամենը, ինչ ի վիճակի ենք անելու Չինաստանի կոմունիստական պարտիայի հետ միասնության ամրապնդման համար, համաշխարհային կոմունիստական շարժումը Լենինի դրոշի տակ համախմբելու համար, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների համախմբման համար, այն բոլոր երկրներին ներգործուն օգնություն ցույց տալու համար, որոնք պայքարում են գաղութատիրության դեմ, խաղաղության գործի ամրապնդման և ամբողջ աշխարհում կոմունիզմի մեծ իդեալների հաղթանակի համար»:



# ՀԱՆՈՒՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՈՒ ՊԵՏԱԿԱՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ—ՊԵՏԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ե. ԱՄԾԱՏՐՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար, ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի նախագահ

*ՍՄԿՊ XXII համագումարը, որն ընդունեց կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը, որպես պարտիայի կարևորագույն հարցերից մեկը առաջ քաշեց ժողովրդական տնտեսության ղեկավարման հետագա բոլոր ամենայնի բարելավումը։*

*ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի մշակված և այժմ հաջողությամբ իրականացվող տնտեսության պարտիական ղեկավարման վերակառուցման, պարտիական-պետական վերահսկողության լենինյան սկզբունքների վերականգնման ու նոր պայմաններին համեմատ դրանց հետագա զարգացման միջոցառումները անչափ խոշոր, հիրավի ռևոլյուցիոն քայլ հանդիսացան պարտիայի համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում։*

*Մեր օրերում, երբ ժողովրդի, պարտիայի և պետության ստեղծարար գործունեությունը վիթխարի ծավալ է ընդունել, պարտիական-պետական միասնական համապարփակ վերահսկողության ստեղծումը կոմունիզմի ուղիով սովետական հասարակության հաջող առաջընթացի, ժողովրդի հետ պարտիայի կապերի ամրապնդման, հասարակության գործերին մասսաներին ներգրավելու անհրաժեշտ նախադրյալը հանդիսացավ։*

*Ինչպես ասված է ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշման մեջ, «Պարտիական-պետական վերահսկողության օրգանների կարևորագույն խնդիրը համարել օգնությունը պարտիային ու պետությանը ՍՄԿՊ ծրագրի կատարման, պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման սիստեմատիկ ստուգման կազմակերման, կոմունիստական շինարարության ղեկավարման հետագա կատարելագործման, պարտիական ու պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության պահպանման գործում»։*

*Գլխավոր ուշադրությունը բևեռելով ժողովրդական տնտեսության և, մասնավորապես, նոր հասարակարգի կառուցման վճռական բնագավառի՝ արտադրության պրոբլեմների վրա, պարտիական-պետական վերահսկողության օրգանները միաժամանակ կոչված են, առանց դեմքին ու դիրքին նայելու, կանխելու պարտիային և կառավարությանը խաբելու բոլոր փորձերը, ինչ ձևով էլ որ դրանք դրսևորվեն, անողոք պայքար մղել տեղայնության, շռայլության և պետական ու հասարակական բարիքի հափշտակումների դեմ, արմատախիլ անել բյուրոկրատիզմը և էկոնոմիկայի զարգացման կենսական հարցերի նկատմամբ, ինչպես նաև աշխատավորների հանդեպ առանձին տեղերում ցուցաբերվող արհամարհական վերաբերմունքը։*

*Պարտիական-պետական վերահսկողության օրգաններին ընձեռած մեծ լիազորությունները ու իրավունքները, ինչպես և գործունեության համար ստեղծված անհրաժեշտ պայմանները նրանց հնարավորություն են տալիս լավ իրազեկ լինելու ժողովրդական տնտեսության գործերի վիճակին, արդյունավետ միջոցներ ձեռք առնելու թերությունները վերացնելու, ժողովրդի շահերին վնաս պատճառող մարդկանց մերկացնելու ու պատժելու, պարտիայի ու կառավարության որոշումների կատարման ընթացքը օբյեկտիվորեն գնահատելու և օգնելու՝ պետական առաջադրանքները ժամանակին կատարելու։*

***

*Կենսագործելով վերահսկողության սիստեմի արմատական վերակառուցման վերաբերյալ նոյեմբերյան պլենումի որոշումները, մեր ռեսպուբլիկայում կազմակերպական լայն աշխատանք ծավալվեց պարտիական-պետական վերահսկողության օրգաններ ստեղծելու և նրանց պրակտիկ գործունեությունը կարգավորելու ուղղությամբ։*

*Ռեսպուբլիկայի քաղաքներում, քաղաքային շրջաններում, արդյունաբերական գոտիներում և գյուղական արտադրական վարչություններում ստեղծված են պարտիական-պետական վերահսկողության 35 կոմիտեներ։ Վերոհիշյալ կոմիտեներում ընդգրկված են պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչներ, արտադրության առաջավորներ, գիտության ու կուլտուրայի գործիչներ, մամուլի աշխատողներ և ուրիշներ։ Բոլոր կոմիտեների կազմում (բացառությամբ քաղաքային կոմիտեների) կա միայն մեկ ազատված աշխատող, այն է՝ նախագահը, իսկ կոմիտեի մնացած բոլոր անդամները ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում աշխատող ակտիվիստներ են։*

*Ռեսպուբլիկական և տեղական կոմիտեներին առընթեր ստեղծված են 163 արտահաստիքային բաժիններ ու հանձնաժողովներ, որոնցում ընդգրկված են 1139 արտահաստիքային տեսուչներ։ Արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում և տնային կառավարչություններում գործում են պարտիական-պետական վերահսկողության օրգաններին աջակցող ավելի քան 5000 խմբեր ու պոստեր, որոնցում ներկայացված են ավելի քան 30 հազար ակտիվ ու հեղինակավոր կոմունիստ և անկուսակցական ընկերներ։*

*Հարկ է ընդգծել, որ պարտիական-պետական վերահսկողության օրգանների գործունեության մեջ ներգրավված կոմունիստների, կոմերիտականների, կանանց, թոշակառուների բազմաքանակ ակտիվը մեծ ոգևորությամբ և բարձր պատասխանատվությամբ ձեռնամուխ է եղել ժողովրդական վերահըս-*

կողության իրագործմանը և տարակույս չկա, որ այդ ակտիվի աշխատանքի ճիշտ կազմակերպման և կոմիտեների կողմից ցույց տրվող ամենօրյա օգնության դեպքում բոլոր ծակուծուկերը պինդ կփակվեն ստահակների, հափշտակիչների, կաշառակերների, ճրիակերների, բյուրոկրատների և հակահասարակական մյուս տարրերի համար։

Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեի նիստերում քննարկվել են ժողովրդական տնտեսության զարգացման հրատապ հարցերի վերաբերյալ պարտիայի ու կառավարության կարևորագույն որոշումների կատարման ընթացքը և միջոցառումներ են նշվել բյուրոկրատիզմի ու քաշքշուկի վերացման, անտնտեսվարության, շռայլության և սոցիալիստական սեփականության հափշտակումների դեմ պայքարն ուժեղացնելու նպատակով։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյի հետ միասին ռեսպուբլիկական կոմիտեն անց է կացրել մասսայական ստուգում՝ պարզելու, թե կոլտնտեսություններն ու սովխոզներն ինչպես են պատրաստվել գարնան գյուղատնտեսական աշխատանքներին, այդ ստուգմանը մասնակցեցին 2700 պարտիական, արհմիութենական, կոմերիտական աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ և պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբերի շատ անդամներ։ Ստուգման ընթացքում ձեռք առնված միջոցառումների շնորհիվ կոլտնտեսությունները և սովխոզները լրացուցիչ կարգով ձեռք բերեցին հացահատիկային կուլտուրաների մոտ 3000 ցենտներ սերմացու, դաշտ դուրս բերվեց 170 հազար տոննա օրգանական և ավելի քան 9000 տոննա հանքային պարարտանյութ, վերանորոգվեցին 210 տրակտոր, 272 տրակտորային գութան, 191 շարքացան, 97 կուլտիվատոր և այլն։

Խիստ դրական արդյունք տվեց մյուս մասսայական միջոցառումը՝ ժողովրդատնտեսական բեռների պահպանման ու փոխադրման ստուգումը երկաթուղային կայարաններում ու առաքման բազաներում։ Այդ ստուգմանը ներգրավվեցին տնտեսական օրգանների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ավելի քան 500 աշխատողներ, ինչպես նաև պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող բազմաթիվ խմբեր։ Մասսայական ստուգատեսի ընթացքում մեծ գործ կատարվեց երկար ժամանակ անշարժ ընկած ժողովրդա-տնտեսական բեռների արագ տեղափոխման գործում պատշաճ կարգ հաստատելու ուղղությամբ, մի բան, որ դրականապես ներգործեց Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի գործունեության վրա։ Այսպես, եթե ստուգումից առաջ չբեռնաթափված վագոնների թիվը ռեսպուբլիկայի երկաթուղային կայարաններում օրական կազմում էր 650, ապա ստուգումից հետո այն կրճատվեց, հասնելով 150—300-ի։

Մայրաքաղաքում և ռեսպուբլիկայի արդյունաբերական կենտրոններում բնակելի շենքերի կառուցման որակի ստուգմանը մասնակցեցին ավելի քան 200 ակտիվիստներ՝ արտահաստիքային տեսուչներ, տեղական սովետների դեպուտատներ և աջակցող խմբերի անդամներ։ Կոմիտեն համապատասխան միջոցներ ձեռք առավ այդ գործում հայտաբերված թերությունները վերացնելու ուղղությամբ և խիստ պատասխանատվության ենթարկվեցին այն մարդիկ, որոնք թերություններով էին շահագործման հանձնել բնակելի տները և հավելագրումներ էին թույլ տվել պետական հաշվետվության մեջ։



Ստուգելով Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի Նախագահության 1962 թվականի հուլիսի 31-ի՝ Քաղաքացիների կողմից անաշխատ եկամուտներով կառուցած կամ ձեռք բերած տները, ամառանոցները և այլ շինությունները անվճար կերպով վերցնելու մասին հրամանագրի կատարման ընթացքը, պարտիական-պետական վերահսկողության օրգանները պարզեցին, որ աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետների գործադիր կոմիտեները պատշաճ միջոցներ ձեռք չեն առնում անաշխատ եկամուտներով կառուցված բնակելի տները վերցնելու ուղղությամբ։ Պարզվեց նաև, որ առանձին քաղաքացիներ զանազան խարդախ միջոցներով թաքցնում են անաշխատ եկամուտներով, անձնական շահադիտական նպատակներով կառուցված բնակելի տները, իսկ աշխատավորների դեպուտատների տեղական սովետների գործկոմները և դատա-քննչական օրգանները չեն բացահայտում նման մեքենայությունները և ըստ էության չեն արգելակում դրանց ձևակերպմանը համապատասխան օրգաններում։

Ահա հիշյալ հրամանագրի կենսագործման հարցում ցուցաբերած անպատասխանատու վերաբերմունքի մի օրինակ. դատարանը (ժողովրդական դատավոր Մ. Խառատյան) անհիմն կերպով մերժեց Կիրովականի քաղաքային սովետի գործկոմի հայցը խանութի վարիչ Վ. Դավթյանից բնակելի տունը վերցնելու մասին, որը վերջինս կառուցել էր անաշխատ եկամուտներով, իսկ դատախազի օգնական Մ. Կիրակոսյանը քաղաքային սովետի գործկոմի որոշումը պաշտպանելու փոխարեն իր պաշտպանության տակ էր առել ապօրինի ճանապարհներով բնակելի տուն կառուցողին։ Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեն գործկոմներից ու դատա-քննչական օրգաններից պահանջեց անշեղորեն կենսագործել Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի Նախագահության այդ հրամանագիրը։

Կատարելով ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի որոշումները, մանրամասն ուսումնասիրելով պետական ու կոոպերատիվ առևտրի վիճակը ռեսպուբլիկայում, կոմիտեն պետպլանի և առևտրի մինիստրության հետ միասին համապատասխան միջոցառումներ մշակեցին ռեսպուբլիկայի առևտրական ցանցի և հասարակական սննդի ձեռնարկությունների գործունեությունը բարելավելու ուղղությամբ. այդ միջոցառումներն արդեն կենսագործվում են։ Միաժամանակ պարբերաբար անց են կացվում սովետական առևտրի կանոնների ու պետական առևտրի ցանցում մանրածախ գների պահպանման մասսայական ստուգումներ։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի հետ համատեղ ստուգվել է մսի, մսամթերքների ու կաթնամթերքների պահպանման ու իրացման վիճակը ռեսպուբլիկայի մսի կոմբինատներում ու սառնարաններում։ Ստուգման ընթացքում պարզվեցին մսի ընդունման ու պահպանման կարգի, արտադրության տեխնոլոգիական ռեժիմի կոպիտ խախտումներ, որոնք և պատճառ են դարձել մեծ քանակությամբ մթերքների կորստի ու փչացման. նույնպես պատասխանատու անձանց մոտ հայտաբերվեցին խոշոր պակասորդներ, սոցիալիստական սեփականության հափշտակումներ։

Կոմիտեն առևտրի մինիստրությանը և ժողտնտխորհին առաջարկեց պատշաճ պետական կարգ ու կանոն հաստատել մսի վերամշակման ձեռնարկություններում ու սառնարաններում, ապահովելով նյութական-ապրան-

քային արժեքների անվթարությունը։ Սամթերքները փչացնելու և հափշտակելու գործում մեղավորները խիստ պատասխանատվության ենթարկվեցին։

Անիի և Հոկտեմբերյանի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներից բազմաթիվ բողոքներ էին ստացվել այն մասին, որ խիստ անբավարար են իրացվում միջկոլտնտեսային գյուղական ջրմուղների շինարարության համար հատկացված միջոցները և ցածրորակ են կատարված աշխատանքները։ Այդ բողոքների հիման վրա ստուգվեց հիշյալ ջրմուղների կառուցման վիճակը, և կոմիտեն անհրաժեշտ միջոցներ ձեռք առավ այդ շինարարությունը ընթացիկ տարում ավարտելու համար։

Բանջարա-բոստանային կուլտուրաների արտադրության ու մթերումների, ինչպես նաև ռեսպուբլիկայի քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների բնակչությանը բանջարեղեն մատակարարելու գործի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրությունը և կոլտնտեսային-սովխոզային արտադրական բազմաթիվ վարչություններ, մասնագիտացված սովխոզներ ու քաղաքամերձ կոլտնտեսություններ, ինչպես նաև ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպություններ չեն ապահովել ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի համապատասխան որոշումների լրիվ կատարումը, որի հետևանքով էլ շատ տնտեսություններ չեն կատարել ցանքի պլանը և վիժեցրել են պետությանը զանազան տեսակի բանջարեղեն հանձնելու առաջադրանքները։ Գործուն միջոցներ են ձեռք առնվել վերացնելու բանջարանոցային կուլտուրաների արտադրության և բնակչությանը բանջարեղեն վաճառելու գործում եղած թերությունները։

Կոմիտեի առաջարկությամբ Երևանի քաղաքային սովետի գործկոմը վերացնում է այն խոշոր թերությունները, որ հայտաբերվել էին ջրամատակարարման և խմելու ջրի կորուստները կանխելու, ինչպես նաև բնակելի տների չեռուցման վարձը ճիշտ սահմանելու ու գանձելու ասպարեզներում։

Պարտիական-պետական վերահսկողության կոմիտեն ուսումնասիրում է մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի համար կարևոր այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, ծծմբաթթվի, պղնձի և մոլիբդենի արտադրության վերակառուցման ու ընդլայնման, խոշոր էլեկտրական մեքենաների արտադրության յուրացման ուղղությամբ կատարվող աշխատանքների վիճակը, արտադրական կարողությունների և տարողությունների ընդլայնումը գինեգործական արդյունաբերության մեջ, ոչխարների խուզի նախապատրաստության և բրդի մթերման ընթացքը, հացահատիկի և հացահատիկային պրոդուկտների պետական ռեսուրսների պահպանման ապահովումը, աշխատավորների կենցաղային սպասարկման կազմակերպումը և այլ հարցեր։

Պարտիական-պետական վերահսկողության օրգանների առաջ ծառացած խնդիրները կենսագործելու ուղղությամբ որոշակի գործ են կատարում նաև տեղական կոմիտեները։

Այսպես, պարտիական-պետական վերահսկողության Երևանի քաղաքային կոմիտեն իր պրակտիկ գործունեության ընթացքում մեծ ուշադրություն է հատկացնում քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքին։ Քաղաքային կոմիտեն պարզել էր, որ քաղաքի որոշ արդյունաբերական



ձեռնարկություններում տարիներ շարունակ անօգտագործելի է մնում արժեքավոր, այդ թվում նաև ներմուծվող, սարքավորումը։ Միայն Լենինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում անօգտագործելի է մնացել մոտ յոթ միլիոն ռուբլու սարքավորում, ընդ որին, դրանից 400 հազարն ընկնում է այն սարքավորմանը, որոնց կարիքը ձեռնարկությունները չեն զգում։

Երևանի քաղաքային ու շրջանային կոմիտեները ստուգեցին լուսատեխնիկական ու հաստոցաշինական գործարանների թողարկած արտադրանքի որակը, ավտոբուսների տեխնիկական վիճակն ու օգտագործումը, որոնց աշխատանքից իրավացիորեն դանգատվում էին քաղաքի բնակիչները, պետական և ֆինանսական կարգապահության վիճակը Շահումյանի լիմոնադի գործարանում և այլն։

Բավական արդյունավետ եղավ այն ռեյդային ստուգումը, որ կատարել է պարտիական-պետական վերահսկողության Լենինականի քաղաքային կոմիտեն մերձքաղաքային ու տեղական գնացքներով ուղևորների երթևեկությունից ստացվող պետական եկամուտների վիճակը պարզելու համար։ Կոշիկի ֆաբրիկայի արտադրանքի նկատմամբ սպառողների գանգատների և առևտրական կազմակերպությունների ռեկլամացիաների հիման վրա Կիրովականի քաղաքային կոմիտեն ուսումնասիրեց անորակ արտադրանքի թողարկման պատճառները և հիշյալ գործարանում հայտաբերեց տեխնոլոգիայի կոպիտ խախտման, ինչպես նաև կաշվե ապրանքների հափշտակումների փաստեր։ Քննարկելով ստուգման արդյունքները, կոմիտեն նշեց տվյալ ֆաբրիկայի աշխատանքի բարելավման միջոցառումները, իսկ մեղավորներին խիստ պատասխանատվության ենթարկեց։



Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի այն ցուցումներով, որ պարտիական-պետական վերահսկողությունը պետք է իրականացվի աշխատավորության լայն մասսաների ակտիվ մասնակցությամբ, պարտիական-պետական վերահսկողության կոմիտեները և շատ պարտիական կազմակերպություններ առանձնահատուկ ուշադրություն են նվիրում աջակցող խմբերի ու պոստերի պրակտիկ աշխատանքի կազմակերպմանը, աշխատավորներին մասնակից դարձնելով ժողովրդական վերահսկողությանը։

Մենք ունենք բազմաթիվ աջակցող խմբեր, որոնք պարտիական կազմակերպությունների օգնությամբ մեծ գործ են կատարում՝ ջանում են վերացնել իրենց հայտաբերած թերությունները, բարելավել ձեռնարկությունների աշխատանքը, կանխել ամեն տեսակ խախտումներ։

Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի-մահուդի կոմբինատի աջակցող խումբը, որը բաղկացած է 35 հոգուց, ուսումնասիրեց աշխատանքի կազմակերպման, հումքի և նյութերի օգտագործման, ինչպես նաև սոցիալիստական սեփականության պահպանման վիճակը կոմբինատում։ Ուսումնասիրելով եռամսյակային պլանի թերակատարման հարցը, աջակցող խմբի անդամները գտան, որ դրա պատճառներից մեկը էլեկտրացեխի վատ աշխատանքն է։ Խումբը կոմբինատի տեխնիկական ղեկավարության հետ միասին մշակեց և իրագործեց մի շարք գործնական միջոցառումներ հայտաբերված թերություն-

ները վերացնելու նպատակով: Հումքի պահպանման վայրերում խումբը հայտաբերեց մեծ քանակությամբ կիսաֆաբրիկատներ, որոնք երկար ժամանակ չէին օգտագործվել և փչանում էին: Խմբի միջամտությունից հետո այդ կիսաֆաբրիկատները տեղափոխվեցին ցեխերը և օգտագործվեցին:

Դրական աշխատանք է կատարել Լենինական քաղաքի № 6 շինմոնտաժային տրեստի աջակցող խումբը, հատկապես, շինարարական աշխատանքների որակը բարելավելու, նյութերի ռացիոնալ օգտագործումն ապահովելու և շինարարական հրապարակներում անվտանգության տեխնիկան բարելավելու ուղղությամբ: Իր աշխատանքում լայն հրապարակայնություն ապահովելու նպատակով խումբը նախատեսել է լույս ընծայել ժողովրդական վերահսկողության թերթիկներ:

Թերությունների ու խախտումների վերացման գործում պարտիական-պետական օրգաններին մեծ օգնություն են ցույց տալիս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծված աջակցող խմբերը: Այսպես, Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության Շիրազլու գյուղի կոլտնտեսության աջակցող խումբն ուսումնասիրեց աշխատանքային կարգապահության վիճակը կոլտնտեսությունում: Այդ ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դաշտավարական բրիգադներում աշխատանքի անբավարար կազմակերպման հետևանքով շատ կոլտնտեսականներ չեն կատարել աշխօրերի մինիմումը: Այդ մասին լուրջ խոսակցություն տեղի ունեցավ բրիգադավարների ու կոլտնտեսականների հետ կոլտնտեսության վարչությունում: Ձեռք առնված միջոցների շնորհիվ աշխատանքային կարգապահությունն այդ կոլտնտեսությունում զգալի չափով բարելավվեց:

Քիչ չեն նման օրինակները: Դրանք վկայում են, որ աջակցող խմբերը, համարձակ նկատի ունենալով իրենց տեղական խնդիրներն ու անելիքները, սաբացահայտում են աշխատանքում եղած թերությունները և պարտիական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների օգնությամբ օպերատիվ միջոցներ են ձեռք առնում դրանք վերացնելու համար:

Մեծ ուշադրություն է հատկացվում աշխատավորների նամակների ու դիմումների քննարկմանը: Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեում և նրա տեղական օրգաններում աշխատավորներից ստացվում են բազմաթիվ բողոքներ ու դիմումներ, որոնցից շատերը արժանի են լուրջ ուշադրության: Աշխատավորներից ստացված բողոքների ու հայտարարությունների հիման վրա ուսումնասիրվել են հանգստացողների սպասարկման վիճակը Արզնի կուրորտի № 1 սանատորիայում, Երևանի № 1 կոշիկի ֆաբրիկայում ֆինանսական-տնտեսական գործունեության թերությունները, պատրաստի արտադրանքի ընդունման, հանձնման ու ձևակերպման պետական կարգի խախտումները Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, Էջմիածնի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության Ենգիջա գյուղի կոլտնտեսության նախագահի ապօրինի գործողությունները և այլն:

Պարտիական-պետական վերահսկողության օրգանների աշխատանքը Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական ու տեղական թերթերի սիստեմատիկաբար լուսաբանվում է ռեսպուբլիկական ու տեղական թերթերի էջերում՝ ապահովելով այդ օրգանների գործունեության լայն հրապարակայնությունը: Աջակցող խմբերն իրենց կատարած աշխատանքի մասին պարբե-



րաբար հաղորդումներ են անում պարտիական, արհմիութենական, կոմերիտական ժողովներում, ինչպես նաև կոլեկտիվների ժողովներում:

Սակայն այս ամենը դեռ այն մեծ գործի սկիզբն է, որ պետք է կատարեն պարտիական-պետական վերահսկողության օրգանները:

Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեն և նրա տեղական օրգանները ճիշտ են հասկացել իրենց առջև ծառացած խնդիրները և կարճ ժամանակամիջոցում որոշակի աշխատանք են կատարել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման վերահսկման գծով, մի շարք լուրջ խախտումներ են հայտաբերել առանձին տնտեսական և այլ կազմակերպությունների գործունեության մեջ և կարողանում են վերացնել այդ թերությունները: Սակայն այդ օրգանները դեռևս չեն հասել այն բանին, որ ամենուրեք և գործուն կերպով աշխատեն աջակցող խմբերն ու պոստերը՝ պարտիական-պետական վերահսկողության սիստեմի այդ ամենամասսայական օղակները: Այդ պատճառով էլ ռեսպուբլիկական ու տեղական կոմիտեներն իրենց հիմնական ուշադրությունն այժմ նվիրում են այդ խմբերի աշխատանքի բարելավմանը և ճիշտ կազմակերպմանը:

Եռանդուն միջոցներ ձեռք առնելով տնտեսական և այլ կազմակերպությունների գործունեության մեջ եղած թերությունները հայտաբերելու և վերացնելու ուղղությամբ, պարտիական-պետական վերահսկողության տեղական օրգանները դեռևս բավականաչափ ուշադրություն չեն հատկացնում այն բանին, որ մեր կադրերին ետ պահեն թերություններից ու վրիպումներից, կանխեն սխալները, նրանց նպատակամղեն հաջողությամբ լուծելու տնտեսական-քաղաքական խնդիրները:

Պարտիական-պետական վերահսկողության որոշ կոմիտեներ, տարվելով ստացված ահազանգերի ստուգմամբ, աչքաթող են անում պարտիայի և կառավարության ցուցումների փաստական կատարման սիստեմատիկ ստուգման կազմակերպումը, արտադրության ներքին ռեզերվների և հնարավորությունների հայտաբերումն ու օգտագործումը, պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության ամրապնդումը:

Ռեսպուբլիկայի պարտիական օրգանները ձեռք են առնում բոլոր միջոցները, որպեսզի պարտիական-պետական վերահսկողության տեղական օրգանները դառնան մասսայական-ժողովրդական վերահսկողության իսկական կազմակերպիչներ, մի վերահսկողություն, որի նպատակը սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ վերելքն է:

Խնդիրն այժմ կայանում է նրանում, որ պարտիական-պետական վերահսկողության բոլոր օղակները գործեն հստակ ու կազմակերպված, որ պարտիայի՝ այդ օրգաններն աշխատանքի ուղարկած ընկերները պատասխանատվության մեծ զգացումով իրականացնեն իրենց վրա դրված խնդիրները:

Կյանքի նոր ուսումնասիրություն տեղերում, մշտական շփում ժողովրդի հետ, օպերատիվություն և գործարարություն, բարձր կազմակերպվածություն և սկզբունքայնություն — այս պետք է լինի պարտիական-պետական վերահսկողության յուրաքանչյուր կոմիտեի աշխատանքի ոճը:



ները վերացնելու նպատակով։ Հումքի պահպանման վայրերում խումբը հայտաբերեց մեծ քանակությամբ կիսաֆաբրիկատներ, որոնք երկար ժամանակ չէին օգտագործվել և փչանում էին։ Խմբի միջամտությունից հետո այդ կիսաֆաբրիկատները տեղափոխվեցին ցեխերը և օգտագործվեցին։

Դրական աշխատանք է կատարել Լենինական քաղաքի № 6 շինմոնտաժային տրեստի աջակցող խումբը, հատկապես, շինարարական աշխատանքների որակը բարելավելու, նյութերի ռացիոնալ օգտագործումն ապահովելու և շինարարական հրապարակներում անվտանգության տեխնիկան բարելավելու ուղղությամբ։ Իր աշխատանքում լայն հրապարակայնություն ապահովելու նպատակով խումբը նախատեսել է լույս ընծայել ժողովրդական վերահսկողության թերթիկներ։

Թերությունների ու խախտումների վերացման գործում պարտիական-պետական օրգաններին մեծ օգնություն են ցույց տալիս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծված աջակցող խմբերը։ Այսպես, Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության Շիրազլու գյուղի կոլտնտեսության աջակցող խումբն ուսումնասիրեց աշխատանքային կարգապահության վիճակը կոլտնտեսությունում։ Այդ ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դաշտավարական բրիգադներում աշխատանքի անբավարար կազմակերպման հետևանքով շատ կոլտնտեսականներ չեն կատարել աշխօրերի մինիմումը։ Այդ մասին լուրջ խոսակցություն տեղի ունեցավ բրիգադավարների ու կոլտնտեսականների հետ կոլտնտեսության վարչությունում։ Ձեռք առնված միջոցների շնորհիվ աշխատանքային կարգապահությունն այդ կոլտնտեսությունում զգալի չափով բարելավվեց։

Քիչ չեն նման օրինակները։ Դրանք վկայում են, որ աջակցող խմբերը, նկատի ունենալով իրենց տեղական խնդիրներն ու անելիքները, համարձակ բացահայտում են աշխատանքում եղած թերությունները և պարտիական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների օգնությամբ օպերատիվ միջոցներ են ձեռք առնում դրանք վերացնելու համար։

Մեծ ուշադրություն է հատկացվում աշխատավորների նամակների ու դիմումների քննարկմանը։ Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեում և նրա տեղական օրգաններում աշխատավորներից ստացվում են բազմաթիվ բողոքներ ու դիմումներ, որոնցից շատերը արժանի են լուրջ ուշադրության։ Աշխատավորներից ստացված բողոքների ու հայտարարությունների հիման վրա ուսումնասիրվել են հանգստացողների սպասարկման վիճակը Արզնի կուրորտի № 1 սանատորիայում, Երևանի № 1 կոշիկի ֆաբրիկայում ֆինանսական-տնտեսական գործունեության թերությունները, պատրաստի արտադրանքի ընդունման, հանձնման ու ձևակերպման պետական կարգի խախտումները Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, Էջմիածնի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության Ենգիջա գյուղի կոլտնտեսության նախագահի ապօրինի գործողությունները և այլն։

Պարտիական-պետական վերահսկողության օրգանների աշխատանքը սիստեմատիկաբար լուսաբանվում է ռեսպուբլիկական ու տեղական թերթերի էջերում՝ ապահովելով այդ օրգանների գործունեության լայն հրապարակայնությունը։ Աջակցող խմբերն իրենց կատարած աշխատանքի մասին պարբե-



բաբար հաղորդումներ են անում պարտիական, արհմիութենական, կոմերիտական ժողովներում, ինչպես նաև կոլեկտիվների ժողովներում։

Սակայն այս ամենը դեռ այն մեծ գործի սկիզբն է, որ պետք է կատարեն պարտիական-պետական վերահսկողության օրգանները։

Պարտիական-պետական վերահսկողության ռեսպուբլիկական կոմիտեն և նրա տեղական օրգանները ճիշտ են հասկացել իրենց առջև ծառացած խնդիրները և կարճ ժամանակամիջոցում որոշակի աշխատանք են կատարել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման վերահսկման գծով, մի շարք լուրջ խախտումներ են հայտաբերել առանձին տնտեսական և այլ կազմակերպությունների գործունեության մեջ և կարողանում են վերացնել այդ թերությունները։ Սակայն այդ օրգանները դեռևս չեն հասել այն բանին, որ ամենուրեք և գործուն կերպով աշխատեն աջակցող խմբերն ու պոստերը՝ պարտիական-պետական վերահսկողության սիստեմի այդ ամենամասսայական օղակները։ Այդ պատճառով էլ ռեսպուբլիկական ու տեղական կոմիտեներն իրենց հիմնական ուշադրությունն այժմ նվիրում են այդ խմբերի աշխատանքի բարելավմանը և ճիշտ կազմակերպմանը։

Եռանդուն միջոցներ ձեռք առնելով տնտեսական և այլ կազմակերպությունների գործունեության մեջ եղած թերությունները հայտաբերելու և վերացնելու ուղղությամբ, պարտիական-պետական վերահսկողության տեղական օրգանները դեռևս բավականաչափ ուշադրություն չեն հատկացնում այն բանին, որ մեր կադրերին ետ պահեն թերություններից ու վրիպումներից, կանխեն սխալները, նրանց նպատակամղեն հաջողությամբ լուծելու տնտեսական-քաղաքական խնդիրները։

1929-63

Պարտիական-պետական վերահսկողության որոշ կոմիտեներ, տարվելով ստացված ահազանգերի ստուգմամբ, աչքաթող են անում պարտիայի և կառավարության ցուցումների փաստական կատարման սիստեմատիկ ստուգման կազմակերպումը, արտադրության ներքին ռեզերվների և հնարավորությունների հայտաբերումն ու օգտագործումը, պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության ամրապնդումը։

Ռեսպուբլիկայի պարտիական օրգանները ձեռք են առնում բոլոր միջոցները, որպեսզի պարտիական-պետական վերահսկողության տեղական օրգանները դառնան մասսայական-ժողովրդական վերահսկողության իսկական կազմակերպիչներ, մի վերահսկողություն, որի նպատակը սոցիալիստական էկոնոմիկայի անշեղ վերելքն է։

Խնդիրն այժմ կայանում է նրանում, որ պարտիական-պետական վերահսկողության բոլոր օղակները գործեն հստակ ու կազմակերպված, որ պարտիայի՝ այդ օրգաններն աշխատանքի ուղարկած ընկերները պատասխանատվության մեծ զգացումով իրականացնեն իրենց վրա դրված խնդիրները։

Կյանքի նոր ուսումնասիրություն տեղերում, մշտական շփում ժողովրդի հետ, օպերատիվություն և գործարարություն, բարձր կազմակերպվածություն և սկզբունքայնություն— այս պետք է լինի պարտիական-պետական վերահսկողության յուրաքանչյուր կոմիտեի աշխատանքի ոճը։



# ՆԱԽ ԵՎ ԱՌԱՋ ՀԱՆՐԱՅԻՆ ՇԱՀԵՐԸ

## Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար

Մշակելով կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը, պարտիան խնդիր դրեց՝ բարձրացնել պարտիական, սովետական և տնտեսական օրգանների, բոլոր կադրերի պատասխանատվությունը պարտիայի ու կառավարության որոշումների, դիրեկտիվների կատարման նկատմամբ, ամեն կերպ ամրապնդել կարգապահությունը մեր ապարատի բոլոր օղակներում։

Պարտիայի կազմակերպական կառուցման հիմքում դրված է դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը, մի սկզբունք, որն օրգանապես և անքակտելի զուգակցում է դեմոկրատիզմը և ցենտրալիզմը՝ ներպարտիական լայն դեմոկրատիան և խիստ կարգապահությունը։ «Մենք,— գրել է Լենինը,— կողմնակից ենք դեմոկրատական ցենտրալիզմին»։ Մեր պարտիան ուժեղ է իր անդամների գիտակցական կարգապահությամբ, բարձր գաղափարայնությամբ, ժողովրդի գործին անսահման նվիրվածությամբ։ Նշելով պարտիայի ներսում խստագույն գիտակցական կարգապահության անհրաժեշտությունը, Վ. Ի. Լենինը պարտիայի IX համագումարում ասել է. «Եթե խորհենք այն մասին, թե ինչն է, վերջիվերջո այն բանի ամենախոր հիմքը կազմում, որ կատարվեց այդպիսի պատմական հրաշք, որ թուլացած, ուժասպառ, հետամնաց երկիրը հաղթեց աշխարհի ուժեղագույն երկրներին, ապա մենք կտեսնենք, որ դա կենտրոնացումն է, կարգապահությունը և չտեսնված անձնազոհությունը» (Երկեր, հատ. 30, էջ 570)։

Լենինի բնորոշմամբ կարգապահությունը՝ դա գործողությունների միասնականությունն է, քննարկման և քննադատության ազատությունը։ Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում խախտված էին պարտիական կյանքի լենինյան նորմերը, ընդ որում խախտված էր գիտակցական կարգապահության հիմնական նախապայմաններից մեկը՝ քննարկման և քննադատության ազատությունը, որն իր բացասական կնիքն էր դրել մեր կյանքի բոլոր բնագավառների վրա։

Վերականգնելով և զարգացնելով պարտիական կյանքի լենինյան նորմերը, պարտիան իրականացրեց մի շարք միջոցառումներ, բարենպաստ պայմաններ ստեղծելով պարտիայի ներսում բոլոր հարցերի ազատ ու անկաշկանդ քննարկման, քննադատության և ինքնաքննադատության ծավալման, կոմունիստների ստեղծագործական ինքնագործունեության, նրանց ակտիվության զարգացման համար։

Սակայն դեռ կան առանձին կոմունիստներ, որոնք աղավաղելով քննադատության ազատության հասկացությունը, կարծում են, որ իրենք կարող են ասել, գրել, կատարել այն, ինչ իրենք են ցանկանում, որ կարող են չկատարել պարտիական ու պետական որոշումները։ Իհարկե՛, այդ անարխիստական հարցադրումը, ինչպես նաև նրանց վարքագիծը, ընդհանուր ոչինչ չունեն պարտիական կյանքի լենինյան նորմերի հետ։



## ՊԱՀԱՆՋԿՈՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆ

Յուրաքանչյուր կոմունիստի, ղեկավար աշխատողի պարտիականությունը, նրա գաղափարական համոզվածությունը և կոմունիզմի գործին նվիրվածությունը պետք է չափել այն բանով, թե նա ինչպես է կատարում իր պաշտոնական և քաղաքացիական պարտականությունները, գնահատել նրա գործունեությունը գործարանի, կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկի աշխատանքի կոնկրետ արդյունքներով։

Գործի վերածելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, Երևանի պարտիական կազմակերպություններն զգալի հաջողությունների են հասել տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Մայրաքաղաքի սկզբնական պարտիական կազմակերպությունները, շրջանային կոմիտեները հիմնականում հասել են այն բանին, որ արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական և տրանսպորտի հիմնարկներում հաստատվել են պատշաճ կարգ ու կանոն, բարձրացել է աշխատավորների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Կատարելով սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, արտադրական կոլեկտիվները մեծ գործ են կատարում համախառն և ապրանքային արտադրանքի թողարկման, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ։ Այդ են ցույց տալիս ինչպես 1962 թվականի արդյունքները, այնպես էլ 1963 թվականի անցած վեց ամիսներին սոցիալիստական մրցության պարտավորությունների կատարման ընթացքը։

Համախառն արտադրանքի ընթացիկ տարվա կիսամյա պլանը քաղաքի արդյունաբերությունը կատարել է 103,3 տոկոսով, պլանից դուրս թողարկվել է 11 միլիոն 877 հազար ռուբլու արտադրանք. Երևանի բոլոր շրջանները գերակատարել են սոցիալիստական մրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները, մի բան, որ չի կրում էպիզոդիկ բնույթ։ Ինքնարժեքի արտապլանային իջեցումից ստացված խնայողությունը կազմում է մեկ միլիոն 976 հազար ռուբլի, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվել է 102,3 տոկոսով։ Արժե նշել, որ պարտիայի շրջանային կոմիտեներն ու սկզբնական պարտիական կազմակերպություններն արդեն որոշակի կերպով փոխել են իրենց մոտեցումը արտադրության հարցերի նկատմամբ։ Այժմ խոսքը ոչ թե համախառն արտադրանքի պլանի կատարումն ապահովելու մասին է, այլ նաև ապրանքային արտադրանքի առաջադրանքի կատարման, այն մասին, որ ոչ թե շրջանն ամբողջությամբ վերցրած կատարի պետական պլանները, այլ բոլոր ձեռնարկությունները, մի բան, որին վաղուց հասել է 26 կոմիսարների շրջանը և որին ձգտում են մյուս շրջանները։

Քաղաքի պարտիական կազմակերպությունները վերջին ժամանակներս

զգալի բարձրացրել են պահանջկոտությունը պարտիայի անդամների, ղեկավար ու շարքային բոլոր աշխատողների նկատմամբ: Սկզբնական պարտիական կազմակերպությունների մեծ մասում վերջին տարվա ընթացքում քննարկվել են կոմունիստների կողմից պարտիայի կանոնադրության պահանջների կատարման, ավանգարդային դերի ապահովման և նման շատ այլ հարցեր: Սկզբնական պարտիական կազմակերպություններն արդյունավետ գործ են կատարում մարդկանց գաղափարական դաստիարակության, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները կյանքում արմատավորելու ասպարեզում:

Աշխատանքային և արտադրական բարձր կարգապահությունը դաստիարակության, միջավայրի և կոլեկտիվի ներգործության արդյունք է: Եվ պատահական չէ, որ այնտեղ, որտեղ բարձր է պարտիական և պետական կարգապահությունը, այնտեղ էլ գոյություն ունի առողջ, գործարար, աշխատանքային մթնոլորտ և գործերն էլ լավ են ընթանում:

Այդպիսի կազմակերպություններից են՝ Կիրովի անվան, պոլիվինիլացետատ, ալյումինե գործարանները, Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկան, Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի շոգեքարշային դեպոն և մի շարք այլ կազմակերպություններ, որտեղ կոլեկտիվները հասել են ո՛չ միայն տեխնիկա-տնտեսական հիանալի ցուցանիշների, այլև բոլոր աշխատողները, հատկապես կոմունիստները, դրսևորում են բարձր կազմակերպվածություն և պատասխանատվություն:

Պետական խստագույն կարգապահությունը կենսական նշանակություն ունեցող հարց է ժողովրդական տնտեսության ղեկավարման սիստեմում, առանց այդպիսի կարգապահության խոսք անգամ չի կարող լինել կոմունիստական հասարակարգի կառուցման մասին: Այդ տեսակետից վիճակը հատկապես վատ է ժողտնտխորհի մեքենաշինական և հաստոցաշինական, էլեկտրատեխնիկական և սարքաշինական վարչությունների Երևանի ձեռնարկություններում: Այս ճյուղերի ձեռնարկություններից ինչպես անցյալ, այնպես էլ այս տարի իրենց կոոպերացված մատակարարումների պլանները չկատարեց ավտոպահեստամասերի գործարանը (դիրեկտոր Ռ. Բունաղյան, պարտկազմակերպության քարտուղար Ա. Սիսակյան): Այնպիսի խոշոր ձեռնարկություն, ինչպիսին է Հայէլեկտրագործարանը (դիրեկտոր Ռ. Օհանյան, պարտկոմի քարտուղար Ս. Դավթյան) նույնպես չի կատարել ապրանքային արտադրության պլանը և հարևան տնտեսական շրջաններին պարտք է մնացել մեծ թվով տրանսֆորմատորներ ու գեներատորներ: Ապրանքային արտադրանքի, ինչպես նաև կոոպերացված մատակարարումների պլանները չեն կատարում էլեկտրատեխնիկական, էլեկտրաշարժիչների, փականների, արմատուրայի, հաստոցաշինական, գործիքաշինական և մի շարք այլ գործարաններ:

Սակայն պետական կարգապահության խախտումը միայն դրանով չի սահմանափակվում: Մեր առանձին ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներն ու պարտիական կազմակերպությունները լրջորեն չեն զբաղվում ձեռնարկությունների մյուս տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման հարցերով, թույլ է տրվում ինքնարժեքի թանկացում, խոտան արտադրանք, գերնորմատիվային մնացորդներ, իրացման պլանի թերակատարում, աշխատավարձի ֆոնդի գերածախս և այս ամենի հետևանքով այդ ձեռնարկություններում ստեղծվել են ֆինանսական դժվարություններ, դրանցից բխող բոլոր հետևանք-



ներով (լուսատեխնիկական, գեղարվեստական ժամացույցների գործարանները, հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկան, նուրբ բրդյա գործվածքների-մահուդի կոմբինատը և այլն):

Դժվար չէ նկատել, որ պարտիական և պետական կարգապահության խախտման փաստերը բազմաթիվ են ու բազմատեսակ: Այդ ամենը խոսում է այն մասին, որ մեր առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ, շրջանային կոմիտեներ միշտ չէ, որ անհրաժեշտ պահանջկոտություն են ցուցաբերում այնպիսի ղեկավար կադրերի նկատմամբ, որոնք աշխատում են առանց նախաձեռնության, ընտելացել են իրենց ձեռնարկության ետ մնալուն: Այստեղից էլ հետևում է մայրաքաղաքի պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը՝ ամրապնդել պարտիական և պետական կարգապահությունը, աշխատանքային բոլոր տեղամասերում բարձրացնել կոմունիստների, բոլոր աշխատավորների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ:

## ՍՏՈՒԳԵԼ ՄԱՐԴԿԱՆՑ ԵՎ ԳՈՐԾԻ ՓԱՍՏԱԿԱՆ ԿԱՏԱՐՈՒՄԸ

Վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ դրվածքը պարտիայի, ամբողջ պետության գործունեության լենինյան կարևորագույն սկզբունքն է: Պարտիական և պետական կարգապահության էությունը պարտիայի ու կառավարության դիրեկտիվների ու որոշումների ժամանակին և անթերի կատարումն է:

Վերջին տարիներին մայրաքաղաքի պարտիական կազմակերպությունների աշխատանքի հիմնական նպատակն է եղել մոբիլիզացնել աշխատավորների ուժերը պարտիայի XXII համագումարի որոշումների, ՍՄԿՊ ծրագրում առաջ քաշված խնդիրների կենսագործման համար: Ինչպես սկզբնական պարտիական կազմակերպությունները, այնպես էլ պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեներն սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել որոշումների ստուգման կազմակերպմանը, կենդանի կազմակերպչական աշխատանքին, սկսել են ակտիվ միջամտել հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսական գործունեությանը:

Սակայն պարտիական և պետական որոշումների փաստացի կատարման գործում դեռևս կան աղաղակող թերություններ: Ամենից առաջ, որպես ընդհանուր թերություն պետք է նշել, որ մեզանում շատ են ընդունվում բազմաթիվ, իրար կրկնող որոշումներ: Ահա մի քանի օրինակ:

Ինչպես հայտնի է, 1946 թվականին հեղեղը խոշոր վնաս հասցրեց Երևանի թե՛ տնտեսությանը և թե՛ բնակչությանը: Այնուհետև պարբերաբար շատ թե քիչ չափով նույնը կրկնվել է: Գետառի հունը կարգավորելու համար ռեսպուբլիկական և քաղաքային կազմակերպությունները ընդունել են բազմաթիվ որոշումներ, կազմել են նախագծեր, սակայն 17 տարի է անցել, բայց գործը լիովին չի ավարտված:

Այս գործում քաղաքային սովետի գործկոմը ցուցաբերել է աններելի անտարբերություն: Տարիներ շարունակ խոսում են Գետառի հունի կարգավորման մասին, սակայն մինչև հիմա չկան նույնիսկ բանվորական շատ գծագրեր: Հայտնի չէ, թե նախահաշվի գումարներից որքան է ծախսվել և որքան մնացել: Ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի 1962 թ. որոշմամբ հանձնարարված էր

քաղսովետին մինչև 1962 թ. սեպտեմբերի 1-ը պատրաստել Ջրաշենի ձորի ջրերի հեռացման նախագծերը. անցել է մեկ տարի, բայց նախագծերն այդպես էլ չկան։ Այդ նույն որոշմամբ պարտավորեցված էր շինարարության մինիստր ընկ. Կ. Մարությանին մինչև 1963 թ. ապրիլը ավարտել Ոչխարաբերդի և Գետառի հուների բարեկարգումը, ինչպես նաև Օրջոնիկիձեի պողոտայում նոր կամուրջի կառուցումը, սակայն այս աշխատանքները նույնպես ձախողված են։ Ինչո՞ւ է ստեղծվել նման վիճակ, ինչո՞ւ այդ գործը կազմակերպող մարդիկ անպատասխանատվություն են ցուցաբերում ռեսպուբլիկայի կառավարության որոշումների կատարման հարցում։

Կամ՝ 1961 թ. հոկտեմբերի 14-ին Մինիստրների սովետի որոշմամբ ժողտնտխորհին հանձնարարված էր կազմակերպել ջրաչափերի արտադրությունը։ Սակայն այդ որոշման նկատմամբ ժողտնտխորհի ցուցաբերած քաշքշուկի հետևանքով այն ևս մնաց թղթի վրա։ Ստուգել որոշումների կատարումը՝ այդ չի նշանակում գրանցել կատարվածն ու չկատարվածը, այլ կազմակերպել ընդունված որոշումների անթերի կատարումը։ Կատարման կազմակերպումն ու ստուգումը միևնույն պրոցեսի բաղկացուցիչ մասերն են։

Բանն այն է, որոշ մարդկանց մոտ բացակայում է խոսքի ու գործի միասնությունը։ Այսպես՝ ժողտնտխորհի ձեռնարկություններում մեծ քանակությամբ ապակու ջարդվածքը գրեթե չի օգտագործվում։ Այդ նպատակով 1962 թ. օգոստոսին ժողտնտխորհն ընդունել է հատուկ որոշում, որով պարտավորեցրել էր ձեռնարկություններին հավաքել ապակու ջարդվածքը և հանձնել ապակու գործարաններին։ Համաձայն այդ որոշման մինչև 1962 թ. վերջը պետք է հանձնըվեր 1265 տոննա ապակու ջարդվածք. սակայն հանձնվեց ընդամենը 328 տոննա։ Շամպայն գինիների, կոնյակի, լիմոնադի, գարեջրի գործարանները, կաթի կոմբինատը ոչ մի գրամ չեն հանձնել։ Ժողտնտխորհը 1963 թվականի հունվարին իր որոշումը կրկնում է, սակայն ձեռնարկություններն անցած վեց ամիսների ընթացքում փաստորեն ոչինչ չեն արել այդ որոշման կատարման ուղղությամբ։ Ահա թե պետական կարգապահության խախտումն ինչպիսի նյութական վնաս է հասցնում ժողովրդական տնտեսությանը։

Պարտիական և պետական կարգապահության վիճակը բարվոք չէ նաև պարտիական ու սովետական մի շարք օրգաններում։ Քիչ չեն դեպքերը, երբ քաղաքային և շրջանային սովետների գործադիր կոմիտեների ընդունած որոշումները մնում են անկատար, երբեմն չեն կենսագործվում նույնիսկ սեսիաների որոշումները։ Դեռևս անցյալ տարի օգոստոսին քաղաքային սովետի սեսիան քննարկեց բնակելի ֆոնդի պահպանման հարցը, ընդունեց որոշում, սահմանվեցին ժամկետներ։ Եվ երբ վերջերս քաղսովետի գործադիր կոմիտեն անդրադարձավ այդ սեսիայի որոշման կատարմանը, պարզվեց, որ գործը տեղից բոլորովին չի շարժվել։ Այդ ոչ այլ ինչ է, եթե ոչ սովետական օրգանի հեղինակազրկում։ Այստեղ շատ հաճախ որոշում է ընդունվում միայն ձևի համար, որպեսզի անհրաժեշտության դեպքում ասվի, որ տվյալ հարցի կապակցությամբ ընդունված է պետք եղած որոշումը։

Հայկ. ՍՍՌ Գերագույն սովետի 1962 թ. հուլիսի 31-ի Քաղաքացիների կողմից անաշխատ եկամուտներով կառուցած կամ ձեռք բերած տները, ամառանոցները և այլ շինությունները անվճար կերպով վերցնելու մասին հրամանագրի իրագործման ուղղությամբ մայրաքաղաքի սովետական օրգանները բացարձակապես ոչինչ չեն արել։ Սպանդարյանի շրջսովետի գործկոմը



(նախագահ Գ. Սահակյան) մեկ տարվա ընթացքում պետականացրել է միայն մեկ տուն, այն էլ պետական միջոցներ հափշտակելու համար դատապարտված մարդու տունը, մինչդեռ բազմաթիվ անաշխատ եկամուտներով կառուցված շենքեր կան Նորքում, Մարաշում, Այգեստանում. նման վիճակ գոյություն ունի նաև 26 կոմիսարների շրջանային սովետի գործկոմում (նախագահ Ս. Իսկանդարյան), ուր անտեսում են օրենքը, հասարակական կարծիքը, ցուցաբերում բացարձակ անկարգապահություն։ Նույնպիսին է վիճակը Լենինյան, Օրջոնիկիձեի և Շահումյանի շրջաններում։ Այս ամենին տեղյակ է քաղաքային սովետը, բայց այստեղ նույնպես հաշտվել են ստեղծված վիճակի հետ։

Անհրաժեշտ է վերջ տալ վերադաս օրգանների և սեփական որոշումների կատարման նկատմամբ եղած անպատասխանատվությանը, ուժեղացնել դիրեկտիվների ու որոշումների փաստական կատարման պարտիական ու հասարակական վերահսկողությունը և դրանց ստուգման կազմակերպումը։

## ՊԱՐՏԻԱՆ ՈՒՆԻ ՄԵԿ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Անցած մեկ և կես տարում պարտիայի կանոնադրության կոպիտ խախտումների համար Երևանի պարտշրջկոմները քննել են 520 կոմունիստի գործ, որոնցից 138-ը հեռացվել են ՍՄԿՊ շարքերից, մնացածներն ստացել են պարտիական խիստ տույժեր։

Այդ ամենը խոսում է այն մասին, որ մեր առանձին կազմակերպություններում բարվոք չէ պարտիական կարգապահության վիճակը, ունենք կոմունիստներ և, մասնավորապես, ղեկավար աշխատողներ, որոնք ոտնահարելով պարտիական և պետական կարգապահությունը, թույլ են տալիս անօրինականություններ, զանազան չարաշահումներ։ Եվ վատն այն է, որ երբեմն առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ անհրաժեշտ հետևություններ չեն անում այդ ամենից, վճռական միջոցների չեն դիմում՝ կանխելու նման երևույթները։

1961—1962 թվականներին խոշոր հափշտակումներ հայտաբերվեցին քաղաքի արդյունաբերական, շինարարական և առևտրի մի քանի կազմակերպություններում։ Սակայն դրանցից և ոչ մեկը, կամ գրեթե ոչ մեկն իր արժանի գնահատականը չստացավ սկզբնական պարտիական կազմակերպությունների կողմից, և այդ այն դեպքում, երբ շրջանային կոմիտեները իրավացիորեն բազմաթիվ կոմունիստների հեռացրին պարտիայի շարքերից։

Վերջերս Հայգրքում (գրքի առևտրի վարչության նախկին պետ. Գ. Հովհաննիսյան, պարտբյուրոյի քարտուղար Բ. Հովնանյան) ոչ լրիվ տվյալներով հայտաբերվեց 82 հազար ռուբլու հափշտակում. միայն մեկ պահեստապետի բնակարանից հայտաբերվել է 32 հազար ռուբլի կանխիկ դրամ։ Հայգրքի միայն Երևանի չորս պահեստներում և ութ գրախանութներում համատեղ աշխատում են քսանութ ազգականներ ու բարեկամներ։ Ինչ խոսք, նման տնավարության պայմաններում վարչության կողմից կատարված ստուգումներն ու գույքագրումները կրել են ձևական բնույթ, չեն արտահայտել իրական վիճակը և նպաստավոր պայմաններ են ստեղծել հափշտակումների համար։ 1960 թվականի հունվարին № 3 պահեստում ջրատար խողովակի վթարի հետևանքով բավականին գրքեր են փչացել։ Ստեղծված հանձնաժողովը, ՍՄԿՊ անդամ Մ. Բլբուլյանի գլխավորությամբ դուրս է գրել 115 հազար ռուբլու գրակա-

նություն, որի ընթացքում թույլ են տրվել հանցավոր կեղծիքներ՝ անձնական շահ ստանալու դիտավորությամբ. ըստ որում վարչության պետ, կոմունիստ Գ. Հովհաննիսյանի գիտությամբ ու կարգադրությամբ, խախտելով գոյություն ունեցող բոլոր օրենքները, այդ գրականությունը ոչնչացրել են։

Տարբեր ժամանակներում մեծ չափերի հասնող պակասորդները Հայգրքի ղեկավարները զանազան պատրվակներով սիստեմատիկաբար դուրս են գրել, քողարկելով հափշտակողներին։

Հայգրքի պարտիական կազմակերպությունում և կոլեկտիվում հարցի չի եղել քննադատությունը։ Անգամ ֆինանսների մինիստրության ահազանգումներից հետո էլ վարչության ղեկավարները և պարտկազմակերպությունը միջոցների չդիմեցին սոցիալիստական սեփականությունը պահպանելու, հափշտակումները կանխելու նպատակով։

Հանրահայտ է, թե մեր պարտիան ինչպիսի նշանակություն է տալիս կադրերի ճիշտ ընտրությանն ու տեղաբաշխմանը, բանիմաց, գործարար, քաղաքականապես հասուն, գործին նվիրված, պարտիականությամբ օժտված տնտեսական ղեկավարների ընտրությանը, ղեկավարներ, որոնք կարողանան միանձնյա ղեկավարությունը սկզբունքորեն զուգորդել կոլեգիալության հետ, համընթաց քայլեն պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, կոլեկտիվների հետ, իրենց եսը չհակադրեն կոլեկտիվին, հենվեն կոլեկտիվի վրա։

Այնինչ պրակտիկայում հաճախ այս կամ այն պաշտոնում նշանակվում են մարդիկ, որոնք կարճ ժամանակ անց հեռացվում են աշխատանքից՝ գործը ձախողելու պատճառով, որն, իհարկե, չի կարող բացասական ազդեցություն չունենալ հիմնարկ-ձեռնարկությունների գործունեության վրա։ Երգաշխին տրեստում, նրա մոնտաժային վարչություններում պարտիական և պետական պատշաճ կարգապահության բացակայությամբ պետք է բացատրել, որ հիմնարկի գոյության հինգ տարիներում փոխվել են տրեստի վեց կառավարիչ, երեք գլխավոր ինժեներ, հինգ գլխավոր հաշվապահ. № 1 շինվարչությունում չորս տարվա ընթացքում փոխվել են տասը պետ, ութ գլխավոր ինժեներ և այլն։ Այս ամենի հետևանքով տրեստում ստեղծվել է քաոսային վիճակ։ Չկա նյութական արժեքների հաշվառում, չեն կատարվել տարեկան գույքագրումները և այլն։ Արդյունքը եղել է այն, որ նախնական տվյալներով տրեստում նյութական արժեքների պակասորդը հասել է 51 176 ռուբլու։

Երևանում է առևտրի մինիստրության ենթակայության տակ գտնվող «Հայառմոնտաժ» կոմբինատը։ Մինիստրության կոլեգիան 1962 թվականի մարտին ազատում է կոմբինատի դիրեկտոր Իփեկչյանին՝ ֆինանսական կոպիտ խախտումների համար։

Պարտիական տարրական կարգապահությունը պահանջում էր, որ մինիստրության ղեկավարությունը (մինիստր ընկ. Վարդանյան) կոմբինատի նոր դիրեկտորի նշանակումը համաձայնեցներ պարտիայի շրջանային կոմիտեի հետ։ Սակայն նա հարկ չհամարեց շրջկոմ ներկայացնել իրենց նախատեսած դիրեկտորի թեկնածությունը, համարելով այդ ավելորդ արարողություն։ Կոմբինատի դիրեկտոր նշանակվեց ոմն Գ. Սարգսյան, որը չուներ գործարար և քաղաքական որևէ հատկանիշ։ Նախքան կոմբինատի դիրեկտոր նշանակվելը Գ. Սարգսյանն աշխատել է № 8 տրեստում որպես աշխղեկ։ Նոր դիրեկտորի առաջին հոգսը լինում է ծածկել 10 հազար 661 ռուբլու նյութական արժեքների



այն պակասորդը, որ ինքն ուներ № 8 տրեստում։ Սարգսյանը նամակ է գրում տրեստի կառավարիչ Ա. Զորաբյանին հետևյալ բովանդակությամբ. «Խնդրում եմ իմ վրա հաշված նյութերի դիմաց ներկայացնել հաշիվ «Հայառմոնտաժ» կոմբինատին, կամ էլ բանկից տանել գումարները ինկասոյ ներկայացնելու միջոցով»։ Ա. Զորաբյանը ցուցաբերելով անպատասխանատվություն, խախտելով գոյություն ունեցող պետական բոլոր օրենքները, հաշիվ է ներկայացնում կոմբինատին և կոմբինատի հաշվին փակում Սարգսյանի անձնական պարտքը։ Կոմբինատի նորաթուխ դիրեկտորը համոզվում է, որ իրեն ամեն ինչ կարելի է, սկսում է ընդլայնել իր գործողությունների շրջանակը։ Ամենից առաջ ուռճացնում է կոմբինատի հաստիքները, նոր պաշտոններում նշանակում մի շարք անարժան մարդկանց։

Ապարատը «կատարելագործելուց» հետո դիրեկտորը ծավալում է իր խարդախ գործունեությունը, մինչև որ գործը հասնում է քննչական օրգաններին և շրջանային կոմիտեին։

Երբ այս կամ այն ղեկավար աշխատողը թույլ է տալիս պարտիական և պետական կարգապահության որևէ խախտում, հաճախ ասում են, թե այդ ինչպես պատահեց, չէ՞ որ նա հին աշխատող է, ունի երկար տարիների պարտիական ստաժ։ Ստեղծվել է այնպիսի վիճակ, որ որոշ մարդկանց շուրջ գոյություն ունի անհիմն հասարակական կարծիք և հարցի լուծման ժամանակ ավելի շատ հաշվի է առնվում այդ կարծիքը, քան թե հարցի էությունը։ Ստացվում է այնպես, որ որոշ ղեկավար աշխատողներ կարծում են, թե իրենց ամեն ինչ թույլատրելի է, օրենքները, պարտիական և պետական կարգապահությունը վերաբերում են միայն շարքայիններին, իրենց վերագրում են օրենսդրի իրավունքներ, ցանկացած ձևով մեկնաբանում, ուղղումներ մտցնում պարտիայի կանոնադրության, գործող օրենքների և օրենսդրական ակտերի մեջ։

Երկար ժամանակ կաթի գործարանի դիրեկտոր է ընկ. Պ. Պետրոսյանը։ Շատերը նրան ճանաչում են, նրա մասին ստեղծված է դրական հասարակական կարծիք։ Սակայն իրականում նա այդպիսին չէ։ 1961 թվականին պարտիայի քաղաքային կոմիտեն զբաղվեց Պ. Պետրոսյանի հարցով, երբ անձամբ նրա մեղքով ձախողվեց քաղաքի կաթի վաճառքի գործը, նրան ենթարկեցին պարտիական պատասխանատվության, այդ մասին գրվեց մամուլում։ Թվում էր, թե Պ. Պետրոսյանն անհրաժեշտ եզրակացության կգար այդ ամենից։ Կոմբինատի առաքիչ Վ. Մկրտչյանի մոտ հայտաբերվում է 2100 ռուբլու պակասորդ։ Պետրոսյանը կարգադրում է գումարի մի մասը բռնագանձել, իսկ մնացածը ձևակերպել նրա վրա որպես մնացորդ։ Հետաքրքիր է Պ. Պետրոսյանի տրամաբանությունը, ի՞նչը ձևակերպել որպես մնացորդ, երբ կաթ չկա. սակայն դա չի խանգարում, որ այդպես ձևակերպվի, և Մկրտչյանը շարունակում է աշխատել կոմբինատում, շարունակում է հափշտակել պետության ունեցվածքը։ Գործն այնտեղ է հասնում, որ կոմբինատից գողացած ավելի քան կես տոննա կարագը նա հանձնում է կոմբինատին իր պարտքի դիմաց և դարձյալ պարտք է մնում մոտ 11 հազար ռուբլի։ Եթե մեկ տարի առաջ կոմբինատի դիրեկտոր Պետրոսյանը, գլխավոր հաշվապահ Սապունջյանը կոմունիստաբար, պարտիական սկզբունքայնությամբ լուծեին այդ հարցը, նման վիճակ չէր ստեղծվի։

Մի՞թե կոմբինատի դիրեկտոր-կոմունիստի վարքագիծ է այդ. ինչպե՞ս նա կարող է ենթականերից կարգապահություն պահանջել, երբ ինքը խախտում է այն։ Եվ զարմանալին այն է, որ կոմբինատի սկզբնական պարտիական կազ-

մակերպությունը, որն ունի վերահսկողության ֆունկցիա, ոչ մի անգամ չի անդրադարձել այս հարցերին, ընկերներից չի պահանջել պատասխան իրենց վարքագծի, կոմբինատում տիրող վիճակի համար։ Նրանք մոռանում են ՍՄԿԿ Կանոնադրության այն կետը, ուր ասված է, որ պարտիական և պետական կարգապահությունը «հավասարապես պարտադիր է պարտիայի բոլոր անդամների համար։ Պարտիան ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար, անկախ նրանց ծառայությունից և գրաված պոստերից»։

Մի՞թե կանոնադրության ճյուր ըմբռնման արդյունք չէ, երբ պարտիայի Շահումյանի շրջանային կոմիտեի բյուրոն, քննելով № 1 տրեստի կառավարիչ Գ. Մելիքյանի հարցը, ընդունում է ոչ ճիշտ որոշում։

Տրեստի կառավարիչը Լ. Հարությունյանին, որը նախկինում աշխատել է որպես աշխղեկ և երկու անգամ, այն է՝ 1953 և 1958 թվականներին՝ շինանյութերի հափշտակման համար 5 և 10 տարի ժամանակով դատապարտվել է ազատազրկման և 1960 թվականին վաղաժամ ազատվել կալանքից, նշանակում է № 5 շինվարչությունում որպես աշխղեկ՝ նյութական պատասխանատու անձ։ Հարությունյանն օգտվելով հսկողության բացակայությունից, հափշտակում է 10645 ռուբլու շինանյութեր։ Գ. Մելիքյանը նրան չի հեռացնում աշխատանքից, դատի չի տալիս, իր ասելով ցանկանում է դաստիարակել։ Հարությունյանը մնում է ևս հինգ ամիս և զգալով, որ տեղը տաք է, պետությունից գողանում է 3000 ռ. շինանյութ ևս։ Այսքանից հետո միայն ընկ. Մելիքյանը բարեհաճում է գործը հանձնել քննչական օրգաններին. ժողդատարանը Հարությունյանին դատապարտում է 10 տարվա ազատազրկման։

Ինչպես տեսնում եք, ընկ. Մելիքյանի «մանկավարժությունը», նրա կողմից գոյություն ունեցող օրենքների բացահայտ ոտնահարումը պետության վրա նստում է մոտ 14 հազար ռուբլի։ Գ. Մելիքյանն իրեն այդպես ազատ է զգում, որովհետև նրա մասին ստեղծված է որոշակի դրական կարծիք, նա իրեն զգում է արտոնյալ վիճակում և բոլորովին էլ պատահական չէ, որ Մելիքյանի այդ արարքին ոչ մի գնահատական չի տվել սկզբնական պարտիական կազմակերպությունը, իսկ պարտիայի Շահումյանի շրջկոմը անդրադարձել է ձևի համար, դատավորի մասնավոր որոշման կապակցությամբ։

Երբ խոսվում է պետական կարգապահության մասին, չի կարելի չանդրադառնալ այն կազմակերպությունների գործունեությանը, որոնք կոչված են իրականացնելու, հսկելու, ապահովելու այդ կարգապահությունը։ Այդպիսի կազմակերպություններից են ֆինանսական օրգանները. ֆինանսական կարգապահությունը դա պետական կարգապահության հիմնական էլեմենտներից է և այդ գործում մեծ են ֆինանսական օրգանների անելիքները։ Սակայն նրանց աշխատանքներում կան լուրջ թերություններ. նրանց գործունեությունը փաստորեն դուրս է մնացել պարտիական հսկողությունից։

Այդպիսի օրգաններից են նաև դատաքննչական օրգանները, միլիցիան, որոնց հստակ, օպերատիվ, օբյեկտիվ աշխատանքով պետք է որ ժամանակին կանխվի, բացառվի պետական կարգապահության ամեն մի խախտում, իսկ երբ, թույլ է տրվում խախտում, ապա այդ օրգանները պետք է պատասխանատվության ենթարկեն պետական կարգապահության յուրաքանչյուր խախտողի։ Այդ օրգանների պարտիական կազմակերպությունների մեծ մասում վիճակը խիստ անբավարար է. բացակայում են նախաձեռնությունը, պահանջկոտությունը, որոշ դեպքերում՝ նույնիսկ պարտիական մոտեցումը. այնտեղ մարդիկ խուսափում են իրենց անունով կոչել երևույթները, տալ դրանց ճիշտ գնահատական։ Հարկավոր է ստեղծել այնպիսի վիճակ, որ դատաքննչական օրգանների պարտիական կազմակերպություններում հարգի լինեն գործարար, առողջ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կոմունիստները կարողանան տեսնել ո՛չ միայն ուրիշների, այլև սեփական թերությունները։



Որոշակի նշանակություն ունեն աշխատողի բնավորության գծերը, խառնվածքը, աշխատանքի ոճը, որոնք մեծ ազդեցություն ունեն գիտակցական, ամուր կարգապահության պահպանման գործում։ Մեր որոշ հիմնարկ-ձեռնարկություններում ամուր կարգապահության ստեղծմանը խանգարում է առանձին աշխատողների ինքնակարգապահության բացակայությունը, որը դրսևորվում է բազմաթիվ ձևերով։ Սակայն կա դրա մի ցայտուն, տարածված արտահայտությունը, որն իր արժանի գնահատականը չի ստանում սկզբնական պարտկազմակերպություններում. այնտեղ վրդովվում են, մի տեսակ խորշում, սակայն միշտ էլ աշխատում են հեռու մնալ, չբախվել, գլուխ չդնել այդ երևույթի հետ։ Այդ այն է, երբ աշխատողը, կոմունիստը, ղեկավարը սեփական արժանիքները գերագնահատում է, ապրում անցյալի հուշերով, միշտ դժգոհ է, որը ինքը ըստ արժանվույն չի գնահատվում, արհամարհանքով է վերաբերվում իր ղեկավարներին, աղայաբար՝ ենթականերին։ Նա աշխատանքում ձգտում է ցուցաբերել, այսպես կոչված՝ անկախություն, «ինքնուրույնություն», որի դրսևորումը նա տեսնում է ղեկավարների հետ տեղի ու անտեղի հակաճառելու, վիճելու, հրամաններն ու կարգադրությունները չկատարելու մեջ, ցանկանում է ամեն քայլափոխում ապացուցել, որ ինքն ավելի լավ կղեկավարի, քան նրանք, ովքեր ղեկավարում են. և այդ բոլորի հետևանքով կազմակերպությունում, հիմնարկությունում ստեղծվում են ներվային վիճակ, ոչ գործարար մթնոլորտ։

Բոլորը ճանաչում են կուլտուրայի մինիստրության կուլտուր-լուսավորական հիմնարկների վարչության պետ Համո Հարությունյանին, նա միշտ եղել է պարտիական և սովետական ղեկավար պոստերում։

Ընկեր Հարությունյանն ամեն առիթով խոսում է ազնվության, պարտիական նորմերի խստագույն պահպանման և կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում շարադրված սկզբունքները պահպանելու մասին։ Դժբախտաբար, նրա մոտ բացակայում է խոսքի ու գործի միասնությունը։ Մի՞թե բարձր պաշտոն ունենալն իրավունք է տալիս նրան վեց տարի անընդհատ չխոսել, խռով պահել իր տեղակալի, իր գլխավորած վարչության մի շարք աշխատողների հետ, արհամարհել և անձնական վիրավորանք հասցնել ենթականերին։ Գտնելով, որ իրեն ամեն ինչ կարելի է, վարչության մեթոդական կաբինետից խմբագրական աշխատանքներ կատարելու համար վերջին երկու-երեք տարիների ընթացքում ստացել է հոնարար 4875 ռ. 70 կոպեկ ընդհանուր գումարով, սակայն, ինչպես ցույց են տվել ստուգումները, ընկեր Հարությունյանը ոչ մի խմբագրական աշխատանք չի կատարել, ավելին, այդ գումարից 1935 ռուբլու դիմաց պարտիական անդամավճար չի մուծել։

Մեր հիմնական խնդիրն է՝ լրջորեն զբաղվել կոմունիստների, ղեկավար և շարքային բոլոր աշխատողների դաստիարակության հարցերով։ Կարգապահությունը, ինքնակարգապահությունը դաստիարակության արդյունք են։ Պարտիական կազմակերպությունները պետք է շերտավորված դաստիարակչական աշխատանք կազմակերպեն յուրաքանչյուր աշխատողի հետ, նպաստեն նրա քաղաքական ու տնտեսական գիտելիքների հարստացման, էսթետիկական ու

գեղարվեստական ճաշակի բարձրացմանը, օգնեն վերացնելու մարդկանց բնավորության, սովորությունների և աշխատանքի ոճի մեջ եղած արատավոր գծերը։ Սա ծանր, դժվարին և քրտնաջան աշխատանք պահանջող գործ է։ Մեծամիտ մարդուն մեծամտության մեջ համոզելը հարյուր անգամ ավելի դժվար է, քան սիրո, ազատության կամ ինքնարժեքի մասին դասախոսություն կազմակերպելը։ Պարտիական կազմակերպությունը, նրա քարտուղարը, բյուրոն պետք է առանց սենտիմենտալության նման մարդկանց երեսին ուղղակի ասեն ամբողջ ճշմարտությունը։ «Սենտիմենտալությունը ավելի փոքր հանցանք չէ,— գրել է Վ. Ի. Լենինը,— քան մորթապաշտությունը պատերազմի ժամանակ։ Ով այժմ խուսափում է կարգապահությունից, նա թշնամիներին ներս է թողնում իր շարքերը» (Երկեր, հատ. 33, էջ 63)։ Միայն այդպիսի սուր, սկզբունքային պարտիական վերաբերմունքով կարելի է մեծամիտներին խելքի բերել, իսկ երբ նա համառում է, հետևություններ չի անում, անհրաժեշտության դեպքում պետք է պատժել։

Կարգապահության բարձրացման գործում մեծ անելիքներ ունեն մեր տնտեսական ղեկավարները, որոնք բացի աշխատողների դաստիարակությամբ լրջորեն զբաղվելուց, պետք է իրենց անձնական օրինակով նպաստեն կարգապահության ամրապնդմանը, ցուցաբերեն պահանջկոտություն, չխուսափեն անախորժություններից, չլինեն անտարբեր, չթաքնվեն կոլեգիալ ղեկավարության հետևում։ Լավ տնտեսական ղեկավարն անպայման կդիմի պարտիական ղեկավարությանը, նրա միջոցով և օգնությամբ, կոլեկտիվի օգնությամբ ու հեղինակությամբ և իր ակտիվ մասնակցությամբ արմատախիլ կանի կարգապահության խախտման ամեն մի դեպք։ Սակայն կան սկզբնական պարտկազմակերպություններ, որոնք հանդես չբերելով նախաձեռնություն, ինքնուրույնություն, չկարողանալով լուծել հարցերը, ո՛չ միայն չեն օգնում ադմինիստրացիային, այլև երբեմն խանգարում են վերջինիս՝ պատշաճ կարգ սահմանելու։

Քիչ չեն դեպքեր, երբ որոշ հիմնարկ-ձեռնարկություններում գործերի վիճակի համար պատասխանատու է համարվում միայն տնտեսական ղեկավարը։ Այդ իհարկե, ճիշտ է։ Բայց գործերի վիճակի համար պատասխանատու են նաև պարտիական կազմակերպությունը, բոլոր կոմունիստները։ Զխախտելով միանձնյա ղեկավարության սկզբունքը, պարտիական կազմակերպությունը չպետք է մի կողմ քաշվի, արձանագրի եղած թերությունները և բոլորի համար պատասխան պահանջի միայն հիմնարկի ղեկավարից և երբեմն էլ, խանգարի տնտեսական ղեկավարին՝ կարգի հրավիրելու այս կամ այն կոմունիստին, որը թույլ է տալիս անկարգապահություն, կամ աշխատանքում չի արդարացնում իրեն։ Այսպիսի վիճակ գոյություն ունի, օրինակ, շինարարության մինիստրության «Երներուդ» տրեստում։ Այստեղ տարիներ շարունակ ցածր է եղել աշխատանքային կարգապահությունը, թույլ են տրվել շինանյութերի շռայլումներ, վատնումներ, չարաշահումներ։ Եվ երբ տրեստի նոր կառավարիչ Գ. Վարդանյանը ջանում է որոշակի կարգ ու կանոն մտցնել, նրան դիմադրում են մի քանի կոմունիստներ, չեն օգնում այդ գործում պարտբյուրոն և նրա քարտուղար ընկ. Ասլանյանը։

Կարգապահության պահպանման հարցերում չկան մանրուքներ. անհրաժեշտ է ժամանակին ներկայանալ խորհրդակցություններին ու ժողովներին, արբությամբ կատարել պաշտոնական պարտականությունները, պարտիական ճանձնարարությունները։ Դրանք բոլորը կարգապահության բաղկացուցիչ մասերն են, որոնք բնորոշում են մարդուն, կոմունիստին, ղեկավարին և չի կարելի անտարբեր լինել այն խախտողների նկատմամբ։



Այսպես, պարտիայի քաղաքային կոմիտեն ամիսներ առաջ սկզբնական պարտիական կազմակերպություններին օգնելու նպատակով որոշեց քաղաքի լավագույն դասախոսներին, պրոպագանդիստներին ուղարկել կազմակերպություններ ոչ թե ստուգումներ, ուսումնասիրություններ կատարելու, այլ կոնկրետ, գործնական օգնություն կազմակերպելու։ Սկզբնական պարտիական կազմակերպություններն ուղարկվեցին բուհերի, գիտական հիմնարկների մոտ 90 գիտական աշխատողներ ու դասախոսներ։ Որոշ ժամանակ անց պարզվեց, որ ուղարկված ընկերների մի մասը բարեխղճորեն կատարել է քաղկոմի հանձնարարությունը և սկզբնական պարտիական կազմակերպությունները գոհ են նրանցից։ Սակայն սրանց կողքին եղել են նաև այնպիսիք, որոնք ցուցաբերել են անպատասխանատվություն, արհամարհական վերաբերմունք պարտիական հանձնարարության նկատմամբ։ Նրանք ոչ մի անգամ չեն եղել իրենց ամրացված սկզբնական պարտիական կազմակերպություններում։

Անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունը սկզբնական պարտիական կազմակերպությունների նկատմամբ, օգնել նրանց հաջողությամբ իրականացնելու վերահսկողության ֆունկցիան։ Չի կարելի հաշտվել այն դրության հետ, երբ պարտիայի առանձին անդամներ, որոնք ավելի լավ են տեսնում, լավ են զգում կազմակերպությունում տիրող վիճակը, քար անտարբերություն են ցուցաբերում պարտիական և պետական կարգապահությունը խախտողների նկատմամբ. «Ես ինքս այդ երբեք չեմ անի,— մտածում են նրանք,— ինչ վերաբերում է մյուսներին, ապա իրենք գիտեն, այդ իմ գործը չէ, դրա համար կա շրջկոմ, քաղկոմ, կենտկոմ»։ Իսկ ո՞ւր մնաց պարտիայի կանոնադրությունը։ Չէ՞ որ կոմունիստը բարոյական պատասխանատվություն է կրում իր շրջապատում կատարվող ամեն ինչի համար. բարոյապես պատասխանատու լինել, այդ չի նշանակում միայն ցավել թերությունների համար, այն սրտի մոտ ընդունել. անհրաժեշտ է անհաշտ պայքար մղել հանուն գոյություն ունեցող թերությունների վերացման։ Անտարբերությունը չի դատապարտվում, չի խարազանվում, հասարակական կարծիք չի ստեղծվում բոլոր նրանց շուրջ, ովքեր իրենց անտարբերությամբ վնաս են հասցնում պարտիական և պետական կարգապահությանը։ Մեր խնդիրն է հասնել այն բանին, որ մայրաքաղաքի բոլոր կոմունիստներն առաջին հերթին ապահովեն իրենց ավանգարդային դերը, օրինակ ծառայեն աշխատանքում, անձնական կյանքում, գործնական պայքար մղեն կարգապահության ամեն տեսակի խախտումների դեմ, իրենց շուրջը համախմբեն աշխատավորական ամենալայն խավերին, հարգանք սերմանեն դեպի օրենքը, կարգը, կարգապահությունը, մեր մարդկանց դաստիարակեն հայրենասիրության ոգով, որպեսզի նրանք ապրեն ու պայքարեն իրենց կոլեկտիվի, շրջանի, քաղաքի, ռեսպուբլիկայի, մեր մեծ Միության հետագա հաջողությունների համար։



# Գաղափարական-հարձակողական պայքարը ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ գրավականն է

## ՀԱԿԱՄԱՐՔՍԻԶՄԻ ՋԱԽՈՐԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. ԱՍԼԱՆՅԱՆ

Համաշխարհային-պատմական մեծագույն պրոցեսներ են տեղի ունենում մեր դարաշրջանում. մի կողմից հասարակության կոմունիստական վերափոխումների պրոցեսը սոցիալիստական երկրներում, մյուս կողմից՝ սոցիալական խոր ցնցումներ կապիտալի աշխարհում։ Վերջինս մտել է իր մայրամուտի դարաշրջանը և ապրում է իր սիստեմի ճգնաժամի նոր էտապ։ Այս ֆոնի վրա հըսկայական ուժով բորբոքվել է կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների անհաշտ պայքարը։ Սա միանգամայն հասկանալի է. այստեղ մենք գործ ունենք երկու իրարամերժ, անհաշտելի գաղափարական սիստեմների հետ բոլոր գծերով՝ փիլիսոփայության, սոցիոլոգիայի, տնտեսագիտության, պատմագիտության, գեղագիտության, բարոյականության և այլն։

Պայքարի սրումը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պատմական մեծ պրոցեսի արտացոլումն է մարդկության հոգևոր կյանքում։ «Իմպերիալիզմը թևակոխել է մայրամուտի ու կործանման ժամանակաշրջանը,— ասված է ՍՄԿԿ Ծրագրում,— կազմալուծման անկասելի պրոցես է համակել կապիտալիզմին հիմքից մինչև գագաթը՝ նրա տնտեսական ու պետական կարգին, քաղաքականությանն ու գաղափարախոսությանը։ Իմպերիալիզմն անվերադարձ կորցրել է իշխանությունը մարդկության մեծամասնության նկատմամբ։ Մարդկության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, նրա գլխավոր ուղղությունն ու գլխավոր առանձնահատկությունները որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ, հասարակության սոցիալիստական վերակառուցման համար պայքարող ուժերը»։

Սոցիալիստական սիստեմի զարմանահրաշ նվաճումները կոմունիզմի գաղափարախոսության, ծրագրի իրականացումն են։ «Սոցիալիզմի երկրների պատմական հաղթանակներում,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— մարմնացած է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների վերափոխիչ մեծ ուժը, գաղափարներ, որոնք լուսավորում են ժողովուրդների ճանապարհը դեպի խաղաղություն, դեմոկրատիա և առաջադիմություն, դեպի մարդկության լուսավոր ապագան»։ Այստեղ աննախընթաց ուժով ու վառ կերպով հանդես եկան կոմունիզմի գիտական իդեոլոգիայի վեհ գծերը. բարձրագույն տիպի մատերիալիզմը, խստագույն գիտականությունը, անզուսպ հեղափոխականությունը, խոր մարդասիրությունը, պայծառ լավատեսությունը։ Նրանց մարմնացումն են հանդիսանում Սովետական Միության էկոնոմիկայի, տեխնիկայի, կուլտուրայի, հասարակական ամբողջ կյանքի հզոր վերելքը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հզոր առաջընթացը։ Կոմունիստական գաղափարախոսությունը հռչակում է աշխատանքի, խաղաղության, բոլոր ժողովուրդների բարեկամության ու երջանկության մեծ իդեալները։ Միայն նա է բացատրում պատմության առաջադիմության օրենքները, լուսավորում ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարի ուղին, շողշողուն հեռանկարներ է բաց անում ու անդրդվելի հավատ ներշնչում ամբողջ աշխարհի պրոլետարներին, ճնշված ժողովուրդներին՝ իմպերիալիզմի, գաղութատիրության, սոցիալական ու ազգային ճնշման ու ստրկացման բոլոր ձևերի դեմ մղած իրենց հերոսամարտերում։

Դրան հակառակ իմպերիալիզմի գաղափարախոսությունը խոր դեգրադացիա է ապրում, այն ավելի ու ավելի է դրսևորում իր ռեակցիոն էությունը, իդեալիզմն ու կղերականությունը, ինդիվիդուալիզմը, սոցիալական խոր հոռետեսությունը ու հակամարդասիրական բնույթը։ Այդ բոլոր ռեակցիոն գծերի խտացված արտահայտությունը հակակոմունիզմն է։ Ինչպես ասված է պարտիայի ծրագրում, բուրժուական ուսմունքները չդիմացան պատմական ստուգման։ Այն ժամանակ, երբ մարքսիզմ-լենինիզմը դարձել է առաջավոր մարդկության մտքերի տիրակալը, բուրժուական իդեոլոգիան օրեցօր կորցնում է իր ազդեցությունը մասսաների վրա։ Այդ հանգամանքը, նրա ներկայացուցիչներին դրդում է նորանոր արշավանքներ սկսել կոմունիզմի թեորիայի ու պրակտիկայի դեմ, գործի դնել բոլոր միջոցներն ու պրիոմները կոմունիզմի, մարքսիզմ-լենինիզմի հաղթարշավը կասեցնելու հույսով։

Իմպերիալիզմի գաղափարախոսները հուսահատ ճիգեր են գործադրում սոցիալիստական երկրները թափանցելու և, օգտագործելով կապիտալիզմի մնացուկների առկայությունը, ինդիվիդուալիզմի, էգոիզմի, նացիոնալիզմի, անկումայնության թույնով աշխատավորների գիտակցությունը մթագնելու համար։ Մեր աչքերի առջև ծավալվում է չտեսնված սուր հակամարտություն։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներում ու նյութերում ցույց է տրված, որ ռազմական մրցավազքի հետ միասին իմպերիալիզմի մութ ուժերը ծավալում են գաղափարախոսական դիվերսիաներ մարդկանց հոգիներին տիրապետելու համար։ Հոգեբանական պատերազմը իմպերիալիստների կողմից բարձրացված է պետական քաղաքականության մակարդակին՝ ուղղված մարքսիզմ-լենինիզմի, կոմունիզմի, ամեն մի առաջադեմ շարժման դեմ։ «Գաղափարների ճակատամարտ»— այս արտահայտությունը կոմունիզմի թշնամիների շրջանում մարտահրավերի ազդանշան է։ «Մեծ պայքար է ընթանում մարդկանց մտքերի համար,— գրում է նրանցից մեկը՝ Հարոլդ Տայտուսը։— Այդ պայքարի ելքը որոշվելու է ոչ թե ռազմական հաղթանակներով ու զենքով։ Կարո՞ղ ենք արդյոք մենք գալիք տասնամյակներում շահել քաղաքակրթության համար մղվող ճակատամարտը։ Կարո՞ղ ենք արդյոք մենք հաղթել գաղափարների ճակատամարտում, մարդկանց մտքերի ու համոզմունքների համար մղվող ճակատամարտում։ Մենք այժմ ապրում ենք համաշխարհային ռևոլյուցիայի իրադրության մեջ, ռևոլյուցիա, որը ազդեցություն է գործում մարդկության կյանքի ու հասարակության բոլոր կողմերի վրա և ներթափանցում

է դրանց բուն հիմքերը։ Հնարավոր է, որ դա Հռոմի անկման, Վերածնության, Ռեֆորմացիայի կամ արդյունաբերական հեղաշրջման նման մի ժամանակաշրջան է... Նախկին բացատրություններն ու նորմերը կարծես թե խորտակվեցին, շատերը դժվարանում են գտնել կյանքի նոր, հաստատուն հիմքեր... Կոմունիզմը սպառնում է մեր ավանդական հավատալիքներին և հրահրում է մարդկանց մտքերի ու սրտերի համար մղվող պայքարը» («Փիլիսոփայության կենսական պրոբլեմները», Նյու-Յորք, 1953, էջ 1, 3)։

Ինչպես տեսնում ենք, հարցը շատ կտրուկ է դրված։ Գաղափարական երկու սիստեմների պայքարի սրումը սոցիալ-դասակարգային խոր հիմքեր ունի. բուրժուական իդեոլոգները չեն թաքցնում այդ։ Այս ոգով բազմաթիվ խոստովանություններ կան։ Արևմտա-գերմանական ռեակցիոն փիլիսոփա Հայդեգերը կապիտալիզմի պաշտպանների գլխավոր խնդիրը համարում է մարքս-լենինյան պատմա-փիլիսոփայության հերքումը, որովհետև, ասում է նա, դա կապիտալիստական սիստեմի ամենալուրջ հակառակորդն է։ Մարքսիզմի շատ հակառակորդներ են խոստովանում, որ մարքսիզմը, հակառակ իրենց սպասածի, մեծամեծ հաղթանակներ է տանում՝ քայլ առ քայլ դուրս մղելով իմպերիալիզմի գաղափարախոսության ազդեցությունը։ Սա շատ կարևոր, թեև շատ ուշացած խոստովանություն է։ Այդ մասին է վկայում մարքսիզմի ամբողջ պատմությունը։ Այն, ինչ մարքսիստները մի դարից ավելի է, ինչ հռչակել են, վերջապես թափանցում է նրա հակառակորդների ու քննադատների գիտակցության մեջ։

Եվ իրոք, հակամարքսիզմը նոր երևույթ չէ. այն նույնքան հին է, որքան ինքը մարքսիզմը, միայն թե այսօր նա համաշխարհային մասշտաբներ է ընդունել։ Ուստի և մարքսիզմի դեմ նրա հակառակորդների ու թշնամիների մղած պայքարի, այդ ուսմունքը ննենգափոխելու պրիոմների պատմությունը շատ ուսանելի է։ Դա մարքսիզմի հաղթանակների և նրա թշնամիների ձախորդությունների պատմությունն է։ Ծագելով ու ձևավորվելով անցյալ դարի 40-ական թվականներին, մարքսիզմն անկասելի ուժով առաջ է շարժվել, ստուգվել է պատմական մեծագույն իրադարձությունների ու շատ փորձությունների հնոցում, դարձել աշխարհափոխիչ հզորագույն ուժ։ Դրան զուգրնթաց շարունակ դրսևորվել է ռեակցիոն հոսանքների անզորությունը, մարքսիզմը հերքելու բոլոր փորձերի ապարդյունությունը։ «Այն պահից ի վեր,—ասված է ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում Լ. Ֆ. Իլյիչովի տված զեկուցման մեջ,— երբ գոյություն ունի մեր ռևոլյուցիոն տեսությունը, բուրժուազիայի գաղափարախոսները տենդորեն փաստարկներ են որոնում մարքսիզմի դեմ, մի տեսությանը փոխարինում է մեկ ուրիշը։ Սակայն ընդհանուր առմամբ դրանք շատ կարճատև կյանք են ունենում։ Ռեակցիոն բուրժուական գաղափարախոսության պատմությունը կյանքի կողմից մոռացված կամ ջախջախված հիպոթեզների ու տեսությունների յուրահատուկ գերեզմանոց է»։

Սկզբնական շրջանում մարքսիզմի հակառակորդները փորձեցին լռությյան մատնել Մարքսի առաջին աշխատությունները, սկզբում՝ նույնիսկ «Կապիտալը». Նրանք փորձում էին լռությամբ սպանել կոմունիզմի թեորիան ու ծրագիրը։ Սակայն շատ շուտով դրսևորվեց նման պրիոմի սնանկությունը. պատմական մեծ իրադարձությունները հանգեցրին այն բանին, որ մարքսիզմն ընդունվեց որպես համաշխարհային պրոլետարական շարժման ճանաչված գաղափարախոսություն։ Բուրժուազիան, նրա քաղաքագետներն ու տեսաբանները զգացին, որ խիստ վտանգ է սպառնում կապիտալիզմի հիմքերին, եթե գիտական կոմունիզմի գաղափարները դառնան պրոլետարիատի լայն մասսաների սեփականությունը։ Առաջադիմության թշնամիները բնազդորեն զգացին այն, ինչ Մարքսը գիտականորեն ձևակերպել էր դեռ 1844 թվականին. երբ ռևոլյուցիոն թեորիան տիրապետում է մասսաներին, դառնում է նյութական մեծ ուժ։ Այստեղից՝ կապիտալիզմի պաշտպանների վախն ու տագնապը մարքսիզմի ռևոլյուցիոն ուժի հանդեպ, նրա ազդեցությունը չեզոքացնելու կամ թուլացնելու ձգտում, այն «հերքող» զանազան փաստարկների որոնում, այն տարբեր կողմերից աղավաղելու ջանքեր։

Մարտնչող հակամարքսիզմի ներկայացուցիչները որոնում էին մարքսիզմի դեմ դրոհելու ավելի ազդու եղանակներ։ Բուրժուազիան բացահայտ ճակատամարտ մղելով հանդերձ, գործադրեց նոր մեթոդ՝ մարքսիզմի ռևիզիան։ Լենինը խորապես վեր հանեց ռևիզիոնիզմի դասակարգային հիմքը, ռեակցիոն էությունն ու գաղափարական սնանկությունը։ «Պատմության դիալեկտիկան այնպիսին է,— գրել է նա,— որ մարքսիզմի թեորիական հաղթանակը ստիպում է նրա թշնամիներին մարքսիստի զգեստ հագնել։ Ներքուստ նեխված լիբերալիզմը փորձում է վերակենդանացնել իրեն որպես սոցիալիստական օպորտունիզմ» (Երկեր, հ. 18, էջ 738)։ Բոլոր գույնի ու երանգի օպորտունիստներն սկսեցին փորձեր անել ամլացնելու մարքսիզմի ռևոլյուցիոն բովանդակությունը, այն հարմարեցնելու ռեակցիոն բուրժուազիայի շահերին։

Մեր դարաշրջանը կապիտալիզմից կոմունիզմին անցնելու դարաշրջան է. համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյացումը այդ անցման մի նոր էտապ է և մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի վիթխարի հաղթարշավը։ Միևնույն ժամանակ դա իմպերիալիզմի և նրա իդեոլոգիայի պարտության դարաշրջանն է։ Սակայն այդքան ձախորդություններից հետո էլ (կամ գուցե հենց այդ պատճառով) նրա «ասպետները» ոչ միայն զենքը վայր չեն դնում, այլ, ընդհակառակը, մոբիլիզացնում են իրենց բոլոր ուժերը կոմունիզմի ու նրա գաղափարախոսության դեմ նորանոր արշավանքներ կազմակերպելու համար։

Սակայն այդ այլևս չի կարելի անել հին մեթոդներով ու ձևերով. այլ ժամանակներ են։ Այժմ արդեն անհնար է մարքսիզմն անտեսել կամ շեմքից մերժել։ Եվ ահա մեր աչքերի առջև բացվում է հետաքրքրական մի տեսարան. հրապարակ է գալիս բազմանշանակ խոստովանությունների ու մարքսիզմի «ճանաչումների» մի ամբողջ սերիա։ Զանազան դպրոցների, հոսանքների գործիչներ ու մտածողներ ստիպված են հաշվի նստել կոմունիզմի թեորիայի ու պրակտիկայի հետ։ Լեռ գրականություն է ստեղծված և շարունակում է ստեղծվել մարքսիզմ-լենինիզմի մասին, նրա դեմ, նրա շուրջը։

Նշվում է, որ մարքսիզմը հասարակական մտքի պատմությունից մեկուսի ընկած արհեստական աղանդ չէ, այլ սոցիալական կյանքի զարգացման օրինաչափությամբ առաջացած ուսմունք, որը անհնար է արհամարհել։ Հատկապես բարձր գնահատական է տրվում մարքսիստական պատմափիլիսոփայությանը որպես պատմագիտության մի նոր էտապի, առանց որի անհնար է լըրջորեն բացատրել անցյալն ու ներկան։ Մարքսիզմի քննադատները միաբերան նշում են նրա պատմական անխորտակ լավատեսությունը, որով նա վարակում և հրապուրում է մասսաներին։ Անգամ կոմունիզմի թունդ թշնամիները չեն կարող չխոստովանել նրա հսկայական ներգործությունը միլիոնների մտքե-

րի ու սրտերի վրա, նրա վերափոխիչ ուժն ու գործնական մարմնացումը հասարակության սոցիալիստական վերափոխումներում։

Մարքսիզմը կամայածին հորինվածք չէ, այլ մարդկային մտքի զարգացման գիտակցական շարունակությունը, անցյալի հարուստ, հոգևոր կուլտուրայի ժառանգորդը. այդ փաստը անհնար է անտեսել կամ սավերարկել։ Այս միտքն է պնդում ֆրանսիական հայտնի բուրժուական տնտեսագետ ու սոցիոլոգ, այսպես կոչված, «տնտեսական հումանիզմի» գաղափարախոս Ժ. Ֆրիդմանը իր աշխատություններում («Առաջադիմության ճգնաժամը», Փարիզ, 1956, «Ուր է գնում մարդկային աշխատանքը», Փարիզ, 1956)։ Այս հեղինակը իր բոլոր մոլորություններով հանդերձ բավական հարուստ փաստական նյութի հիման վրա ցույց է տալիս իմպերիալիզմի հակաժողովրդական էությունը, բուրժուական առաջադիմության խոր ճգնաժամը։

Ուշադրության արժանի վկայություն է անում մի այլ բուրժուական պատմաբան։ «Մարքսիզմն արդեն էլ չի ներկայացնում ինչ-որ հերետիկոսություն իսկական գիտության նկատմամբ։ Այն լրջորեն ճանաչված է, վերլուծության ու մեկնաբանությունների առարկա է նույնիսկ այն մարդկանց կողմից, ովքեր չեն հավատում նրան կամ վախենում են նրա ազդեցությունից» (Է. Ժամս, 19-րդ դարի տնտեսական մտքի պատմությունը, Մ. 1959, էջ 43—44)։

Այսպիսի վկայություններ շատ են։ Անգլիական բուրժուական սոցիոլոգ Մորիս Ջինսբերգը «Առաջադիմության գաղափարը» (Լոնդոն, 1953) խորագիրը կրող իր բրոշյուրում խմբավորելով մեր ժամանակների ամենանշանակալից պատմա-փիլիսոփայական կոնցեպցիաները, ստիպված է առաջին տեղը հատկացնել մարքսիզմին։ «Առաջինը մարքսիզմն է,— գրում է Լոնդոնի համալսարանի պրոֆեսորը,— որը 19-րդ դարի պատմա-փիլիսոփայության միակ ձևն է, որը պահպանել է իր ազդեցությունը։ Չնայած որ մարքսիստները հաճախակի ժխտում են առաջադիմության «բուրժուական» հասկացողությունը, նրանք պահպանում են վաղ ռացիոնալիստների* հավատը այն մասին, որ մարդը կարող է կերտել իր բախտը։ Նրանք վստահորեն նայում են դեպի առաջ, դեպի այն գալիքը, երբ «լիակատար զարգացած ապագա կոմունիստական հասարակության մեջ անհրաժեշտության թագավորությունը կվերածվի իսկական ազատության թագավորության»» (էջ 13)։

Այստեղ ճիշտ է նշված երկու բան. 1) մարքսիզմի հաջորդակցական կապը անցյալ դարերի առաջավոր գաղափարների հետ, 2) մարքսիզմի մեծագույն հավատը կոմունիզմի՝ իսկական ազատության թագավորության վերջնական հաղթանակի նկատմամբ։ Այս եզրակացությանն են հանգել մարքսիզմի շատ քննադատներ։

Ամերիկյան փիլիսոփա և սոցիոլոգ Լյուիս Ուայթ Բեկը առնչություն չունի կոմունիզմի հետ, բայց նա իր «Փիլիսոփայական հետազոտություն» (Նյու-Յորք, 1953) աշխատության մեջ, որը պատմափիլիսոփայական մի ստվարածավալ գործ է, գրում է, որ մարքսիզմի ամենաարժեքավոր ներդրումը գիտության մեջ պատմության մատերիալիստական բացատրությունն է, որը խոր ազդեցություն է գործել նույնիսկ կոմունիզմի հակառակորդների վրա։ Այնտեղ մենք կարդում ենք. «Տեսական փիլիսոփայության մեջ Մարքսի առավել արժեքավոր ներդրումը նրա պատմահայեցողությունն է։ Պատմության նկատմամբ

* Խոսքը XVIII դ. լուսավորիչների ու մատերիալիստների մասին է։



նրա հայացքը մեծ ազդեցություն է գործել պատմաբանների վրա, նույնիսկ այնպիսիների, ովքեր ոչ մարքսիստ են եղել իրենց ընդհանուր փիլիսոփայական հայացքներով, ոչ էլ կոմունիստ՝ իրենց քաղաքական հայացքներով» (էջ 404)։ Շատ նշանակալից է, որ այս միտքը գրեթե բառացի կրկնվում է տարբեր երկրներում ամենատարբեր հեղինակների մոտ։

Անհետաքրքիր չէ նաև հետևյալ փաստը։ Միացյալ Նահանգներում Մարքսի քննադատները ժողովածու են հրատարակել Մարքսի տնտեսագիտական երկերից («Մարքսը էկոնոմիկայի մասին» վերնագրով. Նյու-Յորք, 1961) հակամարքսիստ Հարրի Շվարցի առաջաբանով։ Այս վերջինս ստիպված է խոստովանել հետևյալը. «Արևմտյան աշխարհի մտավոր պատմությունը, ներառյալ Միացյալ Նահանգների պատմությունը, անհասկանալի կլինի, եթե հաշվի չառնվի մարքսիստական գաղափարների հսկայական բեղմնավոր ազդեցությունը շատ մտքերի վրա՝ ինչպես մարքսիստների, այնպես էլ թունդ հակամարքսիստների։ Արևմտյան աշխարհի երկրներում հրատարակվող պոլեմիկական գրականության ստվարածավալ հատորները ինքնին արդեն վկայում են մարքսիստական գաղափարների նշանակության մասին և այն համառության մասին, որ գործադրում են շատերը, ճգնելով հերքել այդ գաղափարները» (Առաջաբանը, էջ XI)։

Պատմական մատերիալիզմի նման գնահատական ստիպված են տալու հակամարքսիզմի շատ տրուբադուրներ։ Այսպես, ամերիկյան սոցիոլոգ Չարլ Ֆրենկելն իր հավակնոտ գրքում («Ժամանակակից մարդու պրոբլեմը», Նյու-Յորք, 1956) հերյուրանքներ նետելով միջազգային կոմունիստական շարժման հասցեին, այնուհանդերձ ստիպված է ընդունել, որ մարքսիստական պատմափիլիսոփայությունը մի նոր քայլ է հասարակության պատմությունը գիտականորեն բացատրելու գործում։ Է՛լ ավելի համարձակորեն է արտահայտվում ֆրանսիական բուրժուական սոցիոլոգ Է. Շոպարը։ «Ներկայումս,— գրում է նա,— պարզապես անհնարին է հասկանալ մեր դարաշրջանը կամ անցյալ դարերի քաղաքակրթությունների պատմությունը, առանց հաշվի առնելու Մարքսի դոկտրինան» («Ոգու միսիան մեր տեխնիկական քաղաքակրթության մեջ», Նոյշատել, 1960, էջ 57)։

Չենք կարող չվկայակոչել մարքսիզմի վճռական հակառակորդներից ևս մեկին։ Խոսքը ֆրանսիական հայտնի փիլիսոփա և սոցիոլոգ Ռայմոն Արոնի մասին է։ Չնայած իր ամբողջ ատելությանը մարքսիզմի ու կոմունիզմի նկատմամբ, նա խոստովանում է, որ սոցիալիզմի հզորացումը, գաղութակալության փլուզումը, որոնք տեղի են ունեցել ռևոլյուցիոն մարքսիզմի գաղափարների խոր ազդեցության տակ, այնպիսի փաստեր են, որ անհնարին է ժխտել։ «Մարքսիզմը,— գրում է նա,— այն միակ պատմափիլիսոփայությունն է, այսինքն մարդկային ամբողջ անցյալի մեկնաբանությունը, որոշ մետաֆիզիկայի* դիրքերից, որն այժմ լայնորեն ու խորապես ազդում է արևմտյան քաղաքակրթության վրա» («Պատմական գիտակցության մասշտաբները», Փարիզ, 1961, էջ 23)։

Այսպիսի վկայություններ մենք կարող ենք ներկայացնել որքան կամենաք։ Այստեղ մենք պետք է ընդհատենք, առաջադրելով մի հարց։ Ի՞նչ կարելի

* «Մետաֆիզիկա» տերմինն այստեղ գործ է ածվում ընդհանրապես փիլիսոփայության իմաստով։

է ասել այս բոլորի մասին: Ակնհայտ է, որ եթե ուրիշ ոչինչ չլիներ, մարքսիզ-
մի քննադատների հենց միայն այս պերճախոս վկայությունները ինքնին ար-
դեն անառարկելի ապացույց են կոմունիզմի իդեալների օբյեկտիվ ճշտության,
և նրա թշնամիների մարգարեությունների սնանկացման: Առաջներում նրանց
լեյտմոտիվը մարքսիզմի վճռական մերժումն էր, բացարձակ ժխտումը: Ո՞ւր
մնացին այն գերիմաստությունները, թե մարքսիզմը անհող հերետիկոսու-
թյուն է, կապ չունի համաշխարհային գիտության ընդհանուր ուղու հետ, թե
կոմունիզմն անիրագործելի ֆանտազիա է, թե Հոկտեմբերյան ռևոլյուցիան
պատմության օրինաչափության խախտումն է, պատահական դիպվածք, բոլ-
շևիկների դավադրություն, թե կապիտալիզմը հավիտենական հասարակարգ է,
թե գաղութային ժողովուրդները առանց իմպերիալիստների կառավարվել չեն
կարող: Այդ բոլորը ձախողվեցին: Ինչպես տեսնում ենք, ձախորդ փանոսներ
կան ոչ միայն գրականության մեջ:

Ի՞նչ հետևություն է արվում այս բոլորից: Ռեալիստորեն մտածողների ու
գործիչների համար մարքսիզմ-լենինիզմի վաստակների ու հաղթանակների
ճանաչումը հիմք է հանդիսանում լրջորեն խորհելու անցյալի, ներկայի, ապա-
գայի, պատմական պրոցեսի ուղղության, մարդկության ճակատագրի, պա-
տերազմի ու խաղաղության մեր դարաշրջանի մեծագույն պրոբլեմների մասին:
Մարքսիզմ-լենինիզմը բացահայտում է մեզ պատմության իմաստը, առաջա-
վոր մարդկանց սովորեցնում է որոշել իրենց տեղը, խնդիրներն ու անելիքները
համաշխարհային երկու սոցիալական սիստեմների, ռեակցիոն ու առաջավոր
ուժերի պայքարում, առաջադիմության պատմական մեծ պրոցեսում:

Այլ նկատառումներ ունեն մարտնչող հակակոմունիզմի մունետիկները,
առաջադիմության թշնամիները: Մարքսիզմ-լենինիզմի ուժի ու նշանակության
ճանաչումը նրանք օգտագործում են ապացուցելու համար, թե տեսե՛ք-տեսե՛ք
մենք օբյեկտիվորեն ընդունում ենք մարքսիզմի դրական կողմերը, բայց մենք
միաժամանակ կոմունիզմի դեմ սկզբունքային գիտական բանակռիվ ենք
մղում: Այստեղից նրանց տակտիկան՝ մի էջում հարկադրված հաճոյախոսու-
թյուններ անելու մարքսիզմի հասցեին, մյուս էջում նրա նենգափոխում, աղա-
վաղում, կեղծում: Բայց այստեղ կրկին դրսևորվում է բուրժուական մտքի ան-
զորությունը: Կատարյալ տարընթացություն է տիրում նրանց լագերում, հենց
որ փորձում են թափանցել կոմունիստական աշխարհայացքի ներսը, գիտա-
կանորեն վերլուծել նրա հիմնական դրույթները: Սկսվում է իրարամերժ դա-
տողությունների, հակասական գնահատումների, մարքսիզմի ֆալսիֆիկացիա-
յի շարանը: Իսկական ալեկկինյան կոստյում. խայտաբղետ ու ճչացող. մի
երևելի տեսարան:

Դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմը, գիտական կոմունիզմի
գաղափարներն աղավաղման են ենթարկվում ամենատարբեր կողմերից. ծա-
գումը, աղբյուրները, հասարակական մտքի նախորդ հոսանքների հետ ունե-
ցած առնչությունը, զարգացման էտապները, բաղկացուցիչ մասերի հարաբե-
րակցությունը, թեորիան ու պրակտիկան և այլն: Վերցնենք այդ բոլորից մեկ-
երկու հարց:

Այժմ բուրժուական իդեոլոգների ու քաղաքագետների շրջանում շատ մո-
դայական է մարքսիզմ-լենինիզմը հայտարարել «արևելա-մատերիալիստական
աշխարհայացք»: Դրանով ցանկանում են մարքսիզմը դուրս բերել որպես նեղ,
լոկալ ուսմունք, որն ունի տեղական, սահմանափակ, ժամանակավոր նշանա-



կություն, հատուկ է միայն Արևելքի «հետամնաց» երկրներին և կիրառելի չէ
Արևմուտքի զարգացած կապիտալիստական երկրներում: Դժվար թե այդ
կոնցեպցիայի հեղինակները հավատան իրենց հնարանքին. չի կարելի ասել,
թե նրանց հայտնի չէ, որ մարքսիզմը ծագել է հենց Արևմուտքի բուն սրտում՝
Գերմանիայում: Բայց կոմունիզմի նկատմամբ ատելության մոլուցքով բռնը-
ված, նրանք օրը ցերեկով կեղծում են հանրահայտ փաստերը:

Կոմունիստական ուսմունքն ու կոմունիստական շարժումը ամուր հող ունեն
բոլոր աշխարհամասերում. քառասուն միլիոնից ավելի կոմունիստներ հա-
մախմբված ու գիտակցաբար իրենց հերոսական պայքարում ղեկավարվում են գի-
տական կոմունիզմի թեորիայով ու ծրագրով: Այդ ուսմունքով, կոմունիստների
հերոսական գործերով ոգեշնչվում են միլիոնավոր մարդիկ Անգլիայից մինչև
Արգենտինա, Միացյալ Նահանգներից մինչև Աֆրիկայի խորքերը: Միլիարդից
ավելի մարդ Էլբայից մինչև Կուրիլյան կղզիները կոմունիստական պարտիա-
ների ղեկավարությամբ վերափոխում են հին աշխարհը և հաստատում կոմու-
նիստական հանրակարգը: «Լոկալ մարքսիզմի» քարոզիչները հենց իրենք են
խոստովանում, որ մարքսիզմը ոգեշնչում է մասսաներին (անկախ աշխարհա-
գրական ու ռասայական շրջանակներից), նրանց մեջ հավատ է ներշնչում լա-
վագույն ապագայի նկատմամբ, բորբոքում է նրանց «բարոյական պոտենցիա-
ները»: Ճշմարտությունն այն է, որ Ռուսաստանը («Արևելքը») ոչ միայն հան-
դիսացավ մարքսիզմի նոր էտապի՝ լենինիզմի օջախը, այլև առաջինը ճեղքեց
իմպերիալիզմի շղթան, առաջինը իրագործեց կյանքի կոմունիստական վերա-
փոխումը, առաջինը նոր ուղիներ հարթեց մարդկության առաջադիմության
համար:

Պատմության օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների, անհրաժեշտության ու
ազատության, հասարակական զարգացման օրինաչափության և մարդկանց
գործունեության, էկոնոմիկայի ու քաղաքականության հարաբերակցության
պրոբլեմները եղել ու մնում են պատմա-փիլիսոփայության ֆունդամենտալ
պրոբլեմները: Եվ այստեղ գարձյալ դրսևորվում է բուրժուական մտքի անա-
սելի անճարակությունը: Մարդիկ թպրտում են, ինչպես գազանը երկաթյա
վանդակում, իդեալիստական ու մետաֆիզիկական շինծու կոնցեպցիաների,
սուբյեկտիվիզմի ու ֆատալիզմի միջև, իրենց շփոթը վերագրելով մարքսիզ-
մին. ի՞նչ գռեհկություններ ասես, որ չեն փաթաթում մարքսիստների վզին:

Պատմության մատերիալիստական ըմբռնումը քաղաքական, իրավական,
գաղափարական և հասարակական այլ հարաբերությունների հիմքը համա-
րում է արտադրական հարաբերությունները, վերջիններս կապելով հասարա-
կության նյութական արտադրողական ուժերի մակարդակի ու բնույթի հետ:
Արտադրական հարաբերությունների և արտադրողական ուժերի դիալեկտիկան
կազմում է հասարակական ֆորմացիաների զարգացման հիմքը: Այդ զարգա-
ցումը բնապատմական օրինաչափ պրոցեսի բնույթ ունի:

Պատմությունն օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների փոխազդեցության
պրոցես է: Բայց ահա տեսե՛ք, թե ինչպես են այլանդակում, աղավաղում պատ-
մական մատերիալիզմի այս կարևորագույն դրույթը նրա տարբեր գույնի քննա-
դատները: Հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափության և մարդ-
կանց ակտիվ գործունեության հարաբերակցության այս պրոբլեմը օգտագործ-
վում է որպես թալիսման մարքսիզմը «հաղթահարելու» նպատակով: Քննա-
դատները պատվում են պրոբլեմի մոտերքը, ինչպես կատուն տաք կերակրի

շուրջը. ինչ-որ հակասություններ են որոնում մարքսիզմի մեջ, ճարճար ու մեկ
անհեթեթություններ վերագրում նրան, բայց ոչ մի կերպ չեն կարողանում
(ավելի շուտ չեն ցանկանում) հասկանալ, որ մարքսիզմը երևույթների օբյեկ-
տիվ հաշվառումը (խստագույն գիտականություն) դիալեկտիկորեն զուգակցում
է դասակարգի ու պարտիայի բարձրագույն ռևոլյուցիոնության հետ։

Անցյալ դարից սկսած հակամարքսիստները շարունակ նվագում են մեկ
լարի վրա, անվերջ կրկնելով իրենց կարծիքով անառարկելի հետևյալ փաստար-
կը. մատերիալիզմն ու ռևոլյուցիոնությունը անհամատեղելի են. կամ կապի-
տալիզմը օբյեկտիվ օրինաչափության անխուսափելիությամբ կործանվելու է,
իսկ սոցիալիզմը նույն օրենքով պիտի հաստատվի, այդ դեպքում մարքսիստ-
ները պետք է հրաժարվեն պարտիա կազմակերպելուց, իրենց գաղափարները
պրոպագանդելուց, դասակարգային պայքարը հրահրելուց։ Կամ, եթե մարք-
սիստները իրենց հույսը դնում են սուբյեկտիվ գործոնի՝ քաղաքական ու գաղա-
փարական պայքարի վրա, ուրեմն նրանք համոզված չեն, որ սոցիալիզմի ա-
ռաջացումը պատմական անհրաժեշտություն է։ Կա՛մ կա՛մ, երրորդը բացառ-
ված է, tertium non datur։

Այսպես դնելով հարցը, կապիտալիզմի փաստաբանները հավասարապես
աղավաղում են դիլեմայի երկու կողմերն էլ, մարքսիստներին ներկայացնելով
մերթ որպես գռեհիկ մատերիալիստների, մերթ որպես վոլյունտարիստների։

Մարքսիզմը «մատերիալիստական էկոնոմիկական փիլիսոփայություն է»,
—հայտարարում է ԱՄՆ-ի պետական գործիչ Բոուլսը իր մի ճառում՝ էրսկուրս
կատարելով դեպի պատմա-փիլիսոփայության ոլորտը։ Պատմությունն ըստ
մարքսիստների տնտեսական անդեմ պրոցես է, իր հերթին պնդում է Հարվար-
դի համալսարանի պրոֆեսոր Է. Աշերը. մարքսիզմը պատմության մեջ բացի
նյութական փաստից ուրիշ ոչինչ չի տեսնում, կրկներգում է արևմտագերմա-
նական սոցիոլոգ Օտտո Ֆայթը։ Այսպիսի անհեթեթություններ վերագրելով
Մարքսի-Լենինի ուսմունքին՝ թշնամիներն այնուհետև սկսում են հերոսաբար
«ջարդ ու փշուր անել» իրենց իսկ մոգոնած գռեհկությունները։

«ջարդ ու փշուր անել» իրենց իսկ մոգոնած գռեհկությունները։
Քաղաքականությունը, գաղափարական երևույթները օբյեկտիվ հանգա-
մանքներից բխեցնելով, ասում են մեզ, մարքսիզմը տեղ չի թողնում անձնա-
կան գործունեությանը, հոգևոր ու բարոյական շարժառիթներին, կամքին, մար-
դուն վերածելով կենդանի ավտոմատի։ Մարքսիստական ուսմունքը հասարա-
կական ֆորմացիաների օրինաչափ զարգացման մասին ֆատալիզմ է, անհա-
մատեղելի գիտության հետ, մեծագղորդ ազդարարում է բուրժուական պատ-
մա-փիլիսոփայության պարագլուխ հռչակված Առնոլդ Թոյնբին։ Մարքսիզմը
թերագնահատում է հոգևոր գործոնի նշանակությունը և գերագնահատում տըն-
տեսական գործոնի դերը, կարդում ենք Է. Շոպարի գրքում։ Պատմական պրո-
ցեսի տնտեսական անհրաժեշտության մարքսիստական ուսմունքը, իր հեր-
թին ձայնակցում է Մ. Ջինսբերգը, բացառում է մարդկանց ջանքերի ու կամքի
նշանակությունը։

Այս բոլոր դատողությունների մեջ չկա մի բան, որ ասված չլինի սրանից
60—80 տարի առաջ. դա մարքսիզմի կեղծման հնամաշ պրիոմ է. այդ մասին
մենք վաղուց արդեն կարդացել ենք նեոկանտական Շտամլերի գրքում, լսել
ենք նարոդնիկական ու մախիստական սուբյեկտիվ իդեալիստ սոցիոլոգներից,
մարքսիզմի տխմար քննադատ Պլենգեից, բանվորական շարժման մեջ գոր-
ծող զանազան տիպի անարխիստական, «ձախ» ռևոլյուցիոն ֆրազաբաններից։



Ով ծանոթ է մարքսիզմ-լենինիզմի պատմությանը, նա չի կարող չիմանալ, որ
դա սկզբունքային պայքարի պատմություն է, պայքար, որ բոլշևիկները
Լենինի գլխավորությամբ հետևողականորեն մղել են ինչպես ամեն տեսակի
սուբյեկտիվ իդեալիստների ու ավանտյուրիստների դեմ (նարոդնիկներ, անար-
խիստներ, էսերներ, «ձախ» կոմունիստներ, տրոցկիստներ), նույնպես և վուլ-
գար մատերիալիստների, օպորտունիստների ու ռեֆորմիստների դեմ (էկոնո-
միստներ, մենշևիկներ, աջ օպորտունիստներ, ժամանակակից ռևիզիոնիստ-
ներ)։ Հայտնի է, որ վերջիններս շատ են նպաստել մարքսիզմի ֆատալիստա-
կան, գռեհիկ մատերիալիստական աղավաղման տարածմանը։ Նրանք պատ-
մությունն իրոք որ ներկայացնում էին որպես արտադրողական ուժերի ավտո-
մատիկ զարգացման պրոցես, որը առանց պրոլետարիատի դասակարգային
պայքարի ու պրոլետարիատի դիկտատուրայի, հանդարտ ու մեղմ քայլերով,
մի գեղեցիկ օր կհանգեցնի սոցիալիզմին։

Զավեշտականն այն է, որ թշնամիները մարքսիստներին մեղադրում են
նաև ուղիղ հակառակ ծայրից, վոլյունտարիզմի մեջ, այսինքն՝ հասարակու-
թյան զարգացման օբյեկտիվ օրենքների ժխտման և քաղաքականությանը,
մարդկանց կամքին վճռական նշանակություն տալու մեջ։ Նույն Ջինսբերգն,
օրինակ, ինչպես տեսանք, մարքսիստական պատմա-փիլիսոփայությունը հա-
մարելով ամենալուրջը, ինքնաժխտման կարգով գրում է. «Արդյո՞ք Մարքսը
դետերմինիստ էր, ես չեմ կարող պնդել։ Արժեքավորելով Մարքսի վաստակը
ժամանակակից գիտության լույսի տակ պատմական հետազոտության մեթոդի
մշակման գործում, պետք է ընդունել, որ Մարքսը չկարողացավ հայտնագոր-
ծել ժամանակակից հասարակության զարգացման տնտեսական օրենքները»
(«Առաջադիմության գաղափարը», էջ 13)։ Է՛լ ավելի վճռականորեն է մարք-
սիզմը վոլյունտարիստական իմաստով մեկնաբանում նրա ռեակցիոն հակա-
ռակորդ պատմաբան Ֆոն Ռաուխը։ Այս կեղծարարը շատ հեշտ է լուծում հար-
ցը, պարզապես Լենինին հակադրելով Մարքսին, մի պրիոմ, որ գործադրում
են իմպերիալիզմի շատ իդեոլոգներ։ Ըստ Ռաուխի, Լենինի «ուսմունքի առանց-
քը ոչ թե պատմական մատերիալիզմն է, այլ կամքի տեսությունը» («Լենինը
որպես սովետական սիստեմի հիմնադիր», 1958, էջ 24)։

որպես սովետական սիստեմի հիմնադիր», 1958, էջ 24)։ Հնարաբանությունը
Արդեն բոլորովին անհեթեթության է հասցնում այդ հնարաբանությունը
ռեակցիոն փիլիսոփա Աքսելոս Կոստասը. նա առանց քաշվելու պնդում է, թե
Մարքսը ձգտում էր ոչնչացնել մարդու հոգևոր կողմը, բայց այդ նրան չհա-
ջողվեց և նա ընկավ հակառակ ծայրահեղության մեջ՝ առաջնակարգ նշանակու-
թյուն տալով հոգևոր կողմին։ Այս բոլորից հետո զարմանալի չէ, որ մարտնչող
հակակոմունիստները վայնասուն են բարձրացնում, թե կոմունիստները ա-
վանտյուրիստներ են, նրանք ղեկավարվում են դավադրական գործունեության
սկզբունքով, ձգտում են բռնի կերպով խախտել հասարակության զարգացման
«նորմալ» ընթացքը և այլ տխմարություններ։

Կոմունիստները մատերիալիստորեն բացատրելով հասարակության զար-
գացման օրենքները, դեն նետելով սուբյեկտիվիզմի և ավանտյուրիզմի ամեն
մի արտահայտություն, միևնույն ժամանակ պատմական մեծ ստեղծագործու-
թյան են բարձրացնում աշխատավորական մասսաներին՝ գիտականորեն հիմ-
նավորելով նրանց գործունեության ծրագիրն ու ուղղությունը։ Պատմության
առաջադիմությունը մեխանիկորեն չի կատարվում, այն իրագործվում է առա-
ջավոր ուժերի արտադրական ու քաղաքական ստեղծագործությամբ, անդուլ

ջանքերով։ Բուրժուական մտածողները կարծես թե կռահում են այս պարզ ճշմարտությունը, միաժամանակ տալով դրան շփոթ մեկնաբանություններ։

Ուսումնասիրեցե՛ք, պարոններ, բոլշևիզմի անցած ուղին, Մարքսի և Լենինի ուսմունքը, գուցե գլխի ընկնեք, թե ինչը ինչոց է։ Կարդացե՛ք Լենինի հետևյալ դատողությունը. «Մարքսիզմը մյուս բոլոր սոցիալիստական թեորիաներից տարբերվում է նրանով, որ նա իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական լրջությունը երևելի կերպով միացնում է մասսաների ռևոլյուցիոն եռանդի, ռևոլյուցիոն ստեղծագործության, ռևոլյուցիոն ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ, ինչպես նաև, իհարկե, այն առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, պարտիաների նշանակության ճանաչման հետ, որոնք կարողանում են շոշափել և իրացնել կապն այս կամ այն դասակարգի հետ» (Երկեր, հատոր 13, էջ 29)։

Մարքսիզմ-լենինիզմին մինչև վերջ հավատարիմ ՍՄԿՊ-ն աննահանջ ու հաստատորեն ղեկավարվում է լենինյան այդ խորիմաստ դրույթով, ոգեշնչում և ուղղություն է տալիս կոմունիզմի ծավալուն կառուցման մեծ գործով զբաղված սովետական ժողովրդի սխրագործություններին, մարտնչում է աշխարհում խաղաղությունը պահպանելու համար, ստեղծագործաբար զարգացնում մարքսիզմ-լենինիզմը։ Դրա նոր փայլուն ապացույցն է ՍՄԿՊ Կենտկոմի ս/թ հուլիսի 14-ի Բաց նամակը ուղղված Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին։ Այստեղ հանգամանորեն բացահայտված են Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների մտածողության դոգմատիկ մեթոդը, աբստրակտ դատողությունները միջազգային կոմունիստական շարժման ընդհանուր խնդիրների մասին, «ձախ» ռևոլյուցիոն ֆրազաբանությունը համաշխարհային ռևոլյուցիայի վերաբերյալ։ Այստեղ մենք իրոք գործ ունենք սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի հետ, երբ մարդիկ փորձում են ավանտյուրիստական խաղ խաղալ մարդկության ճակատագրի հետ։

Իր ամբողջ գոյության ընթացքում մարքսիզմ-լենինիզմը ռևոլյուցիոն շարժումը վարել է պատմության և իրականության դիալեկտիկական ըմբռնումից ելնելով։ Բազմակողմանիորեն քննելով և վերլուծելով յուրաքանչյուր երկրի և համաշխարհային զարգացման կոնկրետ ընթացքի բարդ զիգզագները, մեր պարտիան իր հաղթանակներով բազմիցս ապացուցել է բուրժուական մտածողության կատարյալ սնանկությունը, մի բան, որ հարկադրված խոստովանում են նույնիսկ կապիտալիզմի անզուսպ ջատագովները։

Հանդես գալով միջազգային ռևոլյուցիոն շարժման իրենց «հատուկ» տեսությամբ և պառակտիչ գործունեությամբ, ՉԿՊ ղեկավարները դրսևորեցին լենինիզմը խեղաթյուրելու, նրա ստեղծարար ոգին մեռցնելու դատապարտելի վարքագիծ։ Այն ժամանակ, երբ ստեղծագործ մարքսիզմի կիրառումով ՍՄԿՊ-ն նորանոր հաղթանակներ է նվաճում մարդկության առաջընթացի կնճռոտ առեղծվածները լուծելու ճանապարհին, ՉԿՊ ղեկավարները կառչելով քարացած ֆրազներից, ավանտյուրիստական միտումներով դիմադարձ են լինում խաղաղության երթին։ Նրանք չեն ըմբռնում, որ մարքսիզմ-լենինիզմին ոչինչ այնքան օտար չէ, քան դոգմատիզմն ու աղանդավորությունը։ Նա, ով ՍՄԿՊ Կենտկոմին մեղադրում է իմպերիալիզմին զիջումներ անելու մեջ, ոչինչ չի հասկացել հենց իմպերիալիզմի արդի էությունից և սոցիալիզմի ու իմպերիալիզմի ուժերի փոխհարաբերությունից։



Մեր փառապանծ պարտիան վճռականորեն պաշտպանում է ժողովուրդների շահերը, վարում է տարբեր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցության արտաքին քաղաքականություն, վճռականորեն մերկացնում է մարքսիզմ-լենինիզմի թշնամիներին, իմպերիալիզմի ռեակցիոն քաղաքականությունն ու իդեոլոգիան։ Կոմունիզմը ոչ միայն տալիս է հրապուրիչ իդեալներ, այլև իրագործում է դրանք։ Այդ իդեալների հսկայական ազդեցությունն ամբողջ առաջավոր մարդկության վրա խոստովանում են ոչ միայն պրոգրեսիվ մարդիկ, այլև կոմունիզմի հակառակորդները։

Հակամարքսիստ Հարրի Շվարցը գրում է. «Պատմությունն արդեն ցույց է տվել, որ ոչ մի հերքում ի վիճակի չէ խարխլելու մարքսիզմի ազդեցությունը։ Դրա պատճառն այն է, որ մարքսիզմն այժմ հարյուրավոր միլիոն մարդկանց համար դարձել է մի գաղափարախոսություն, որը նրանց ցույց է տալիս դեպի լավագույն ապագան տանող ուղին։ Մարքսիզմի համաշխարհային հեղինակությունն աճում է» («Մարքսը էկոնոմիկայի մասին», էջ XXIII)։ Նման վկայությունների թիվը շատ շատ է։

Հարց է ծագում՝ արժե՞ այս բոլորից հետո կանգ առնել մարքսիզմի բուրժուական քննադատության կողմից մարքսիզմի բոլոր կեղծումների, առարկությունների վրա։ Կարծում ենք, որ կարիք չկա։ Ամսագրի էջերում հնարավոր էլ չէ այդ անել։ Բուրժուական լրջմիտ մտածողներից շատերը անկեղծորեն խոստովանում են մարքսիզմի ուժն ու հզորությունը բուրժուական իդեոլոգիայի հանդեպ։ Խոշորագույն բուրժուական գրող Ժյուլ Ռոմենը գրում է, թե բուրժուական գաղափարախոսությունը «արյերգարդային մարտեր է մղում խիզախ ու գրական իդեոլոգիայի (մարքսիզմի) դեմ, որին ներկայումս մենք կարող ենք հակադրել միայն ժխտումը և հին կարգերը որքան կարելի է երկար պահպանելու ցանկությունը» («Ո՞ւր ենք գնում մենք՝ այս մոլորակի ուղևորներս»,— Փարիզ, 1955)։

Այդ հարցի պատասխանը տվել է պատմությունը։ Սոցիալիստական լագերի ժողովուրդները կոմունիզմի վեհ դրոշը բարձր ծածանելով, մարքսիզմ-լենինիզմի կողմնացույցը ձեռքին՝ ընթանում են դեպի վառ ու գեղեցիկ ապագան, դեպի կոմունիզմ։ Կապիտալիստական լագերը պատմության դաժան օրենքներով դատապարտված է անկման ու նեխման, որի ծանր գալարումների հառաչանքները հաճախ իբրև դառն խոստովանություններ լսվում են նրա պաշտպանների տխուր մրմունջներում։ Ինչպես անցյալում, այնպես և այսօր ու վաղը հակամարքսիզմի իդեոլոգիան ելք չունի իր փակուղուց և պետք է վերջնականապես պարտություն կրի։ Դա է պատմության լոգիկան։ Դրա մեջ է կոմունիզմի անպարտելիության մեծ ուժը։





# ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԸ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Վերջին տասնամյակը մեր երկրի կյանքում ուժերի այնպիսի բուռն աճ-
ման մի ժամանակաշրջան էր, որին հավասարը չի եղել նրա պատմության մեջ։
էկոնոմիկան, քաղաքականությունը, հոգևոր կյանքի բոլոր կողմերը, մաս-
սաների բարեկեցությունը հասան այնպիսի բարձունքների, որոնք նշանավո-
րում են կոմունիզմի ծավալուն կառուցումը։ Տիեզերանավի նման մեր երկիրը
վերցնում է այնպիսի մի արագություն, որը հին աշխարհի ուժերի բոլոր մնա-
ցուկների ձգողության սահմաններից նրան դուրս կբերի նոր աշխարհի՝ կո-
մունիզմի ուղեծիրը։ Այդ մեծ գործերի կերտողը ժողովուրդն է, որը համակ-
ված է ոգեշունչ և ստեղծագործ աշխատանքով, ռևոլյուցիոն խանդավառու-
թյամբ, մեր ժամանակի վեհ իդեալների իրականացման հաստատ ձգտումով։
Բայց ժողովրդի ստեղծագործ աշխատանքը տարերային հոսք չէ։ Բարձր
կազմակերպվածություն, պլանաչափություն և աշխատավորների կոմունիս-
տական բարձր գիտակցականություն՝ ահա սովետական ժողովրդի պատմա-
կան ստեղծագործության դրսևորման ձևը։ Իսկ այդ հունով մասսաների գոր-
ծունեությունը կազմակերպող, ուղղություն տվող ուժը՝ Սովետական Միության
կոմունիստական պարտիան է, կոլեկտիվ և իմաստուն առաջնորդը, որին պար-
տական են սովետական մարդիկ՝ իրենց բոլոր հաջողություններով։

Սակայն կոլեկտիվ առաջնորդի դերը կատարելու համար ինքը՝ պարտիան
էլ պետք է ղեկավարվի և կազմակերպվի։ Պարտիան չի կարող պահպանել քա-
ղաքական հեղինակությունը, անսահման վստահությունն ու բարոյական ներ-
գործության ամբողջ ուժը, եթե նրա գլուխ կանգնած չեն տաղանդավոր, պար-
տիային ու ժողովրդին նվիրված, մարքսիզմ-լենինիզմին հավատարիմ ղեկա-
վարներ, առաջնորդներ։ «Բոլորին հայտնի է,— գրում էր Վ. Ի. Լենինը,— որ
մասսաները բաժանվում են դասակարգերի... որ դասակարգերին սովորաբար
և մեծ մասամբ ղեկավարում են... քաղաքական պարտիաները. որ քաղաքա-
կան պարտիաներին, որպես ընդհանուր կանոն, ղեկավարում են առաջնորդ
կոչվող ամենից ավելի հեղինակավոր, ազդեցիկ, փորձված, ամենապատաս-
խանատու պաշտոններում ընտրվող անձերի քիչ թե շատ կայուն խմբերը։
Այս բոլորն այբուբեն է» (Երկեր, հատ 31, էջ 31)։

Եվ ահա ոմանց թվաց, թե այդ «այբուբենը» մոռացվել է կամ նույնիսկ
անծանոթ է մեզ։ Եվ դա այն պատճառով, որ պարտիայի առաջնորդների մեջ,
ամենահեղինակավոր ղեկավարների մեջ ՍՄԿՊ-ն հրաժարվում է տեսնել
«աստծու կողմից ի վերուստ տաըված» ինչ-որ «գերմարդկանց», որոնք կանգ-
նած են պարտիայից ու ժողովրդից վեր։ Բայց չէ որ հենց այդպիսին է անձի



պաշտամունքի գաղափարախոսության տեսակետը, որ համառորեն պաշտպա-
նում է Չինաստանի կոմունիստական պարտիայի (ՉԿՊ-ի) ղեկավարությունը։

Ուրիշները, ինչպես, օրինակ, ստեղծագործական մեր ինտելիգենցիայի
առանձին ներկայացուցիչներ, անձի պաշտամունքի ժխտումը պարտիայի կող-
մից ընդունեցին իբրև առհասարակ առաջնորդների ու հեղինակությունների
դերի ու նշանակության ժխտում, իբրև հասարակական զարգացման մեջ ղեկա-
վարության դերի նսեմացում։

Ինչպես առաջինների, այնպես էլ երկրորդների հայացքների սխալակա-
նությունը ակնհայտ է։ Բնական է, որ ՍՄԿՊ-ն պայքար է մղում ինչպես անձի
պաշտամունքի հասկացության ու պրակտիկայի, այնպես էլ սոցիալիզմի և
կոմունիզմի կառուցման գործում ղեկավարների, հեղինակությունների, առաջ-
նորդների դերի անարխիստական ժխտման դեմ։

## ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ԺԽՏՈՒՄ Է ԱՆՁԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ

Մարքսիզմ-լենինիզմը միշտ էլ պայքարել է ականավոր անհատների, որ-
պես պատմության կերտողների, օրենսդիրների դերի նկատմամբ սուբյեկտիվ-
իդեալիստական հայացքի դեմ։
Մարքսը, Էնգելսը, Լենինը մերկացնում էին բուրժուազիայի այն գաղա-
փարախոսներին, որոնք անհատներին վերագրում էին իրենց կամքով, ձրգ-
տումներով և գաղափարներով հասարակական զարգացումը սնող հերոսների
դեր։ Բոլորին հայտնի է, թե Վ. Ի. Լենինը ինչպես էր պսակազերծ անում «հե-
րոսի» և «ամբոխի» նարոդնիկական կոնցեպցիան։ Նման գաղափարախոսու-
թյան թեորիական էությունը հանդիսանում է ժողովրդական մասսաների, որ-
պես հասարակական զարգացման վճռական ուժի, դերի բացասումը, պատմու-
թյան օբյեկտիվ օրենքների ժխտումը, միայնակ հերոսների հակադրումը ժո-
ղովրդական մասսաներին, պատմական գործիչների աստվածացումը։ Այս ա-
մենը հենց այն է, ինչը ընդունված է անվանել անձի պաշտամունքի գաղա-
փարախոսություն։

Այդ գաղափարախոսությունը իրենով ընդգրկում է և երիտասարդ հեգե-
լականների «քննադատորեն մտածող անհատների» և Թոմաս Կարլեյլի «հան-
ճարների» կամ «նախախնամության առաքյալների» և Միխայլովսկու «կա-
խարդական հիպնոզող» «հերոսների» ըմբռնումները և, վերջապես, Նիցշեի
«շիկահեր սատանայի» նողկալի, մարդատյաց տեսությունը։ Ստալինի անձի
պաշտամունքի՝ մարքսիզմ-լենինիզմին խորթ իդեոլոգիայի մեջ արտացոլվել են
այդ սուբյեկտիվ ըմբռնման հիմնական գծերը, նրա ողջ անզորությունը, բայց,
դժբախտաբար, նաև ապականիչ ու հետադիմական ուժը։

Ծագելով սոցիալիզմի բուռն հաջողությունների և պրոլետարիատի դիկ-
տատուրայի պայմաններում, Ստալինի անձի պաշտամունքը հակասական վնաս
հասցրեց մեր հասարակությանը։ Իր բուն էությամբ հակասելով սոցիալիստա-
կան հասարակարգի բնույթին, անձի պաշտամունքի գաղափարախոսությունն
ու պրակտիկան խոչընդոտում էին սոցիալիստական հասարակության կյանքի
բոլոր կողմերի զարգացմանը։ Այլ կերպ չէր էլ կարող լինել։ Չէ որ անձի պաշ-
տամունքը կաշկանդում էր աշխատավորների ստեղծագործական եռանդը,
մասսաների գիտակցության մեջ արմատավորում էր պասիվ կերպով վերև-

վից ցուցումների սպասելու անհրաժեշտությունը, սահմանափակում էր կոմու-
նիստական շինարարությանը ժողովրդի լայն մասնակցության հնարավորու-
թյունը: Անձի պաշտամունքը չարաչար ոտնահարում էր կոմունիստական շի-
նարարության կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքը, մեծապես կաշ-
կանդում ժողովրդական մասսաների ստեղծագործական ոգին, նրանց հավատը
սեփական ուժերի նկատմամբ:

Խիստ բնորոշ է այն հանգամանքը, որ դեռևս 1925 թվականին գերմանացի
կոմունիստ Մե-րիին գրած նամակում Ստալինը պրոլետարական առաջնորդի
հատկանշող գծերից մեկը համարում էր և այն, երբ նրանից վախենում են
(տե՛ս հատ. 7, էջ 50):

Պաշտամունքի լուսապսակն անխուսափելիորեն պտտեցնում է այն գլու-
խը, որի շուրջը նա փայլում է: Այն առաջնորդը, որին երկրպագում են աստծու
նման, բնականաբար, դադարում է ժողովրդի և պարտիայի առջև պատաս-
խանատվություն զգալուց, տառապում է մեծության մոլագարությամբ,
կտրվում է իրեն աճեցրած հողից՝ պարտիայից ու ժողովրդական մասսանե-
րից: Այդպիսի անհատը կանգնում է պարտիայից, կառավարությունից, ժողո-
վրրդից վեր, դադարում է կոլեկտիվի կամքի հետ հաշվի նստելուց, դուրս է գա-
լիս մասսաների վերահսկողությունից: Դառնալով պարտիական և պետական
կարևորագույն հարցերի միանձնյա տնօրինողը, այդպիսի ղեկավարը արմա-
տավորում է կամայականություն, իշխանության չարաշահում, սոցիալիստա-
կան օրինականության հանցավոր խախտումներ, թույլ է տալիս ամենակոպիտ
սխալներ տեսության մեջ և պրակտիկայում:

Վերջին տարիներին մեր պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն բացա-
հայտեցին և հաղթահարեցին մարքսիզմ-լենինիզմի տեսական և պրակտիկ
բնույթի բազմաթիվ խեղաթյուրումներ, որ թույլ էր տվել Ստալինը: Մեծ սխալ-
ներ էին թույլ տրվել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման,
արդյունաբերության կառավարման, պլանավորման, աշխատավորների նյու-
թական բարեկեցության բարձրացման հարցերում: Նշանակալի չափով Ստա-
լինի ամենակոպիտ սխալներով էին պայմանավորված մեր զորքերի ծանր
պարտությունները Հայրենական պատերազմի սկզբնական շրջանում: Ետպա-
տերազմյան շրջանում նա արհամարհելով կոլեկտիվ ղեկավարության սկըզ-
բունքը, գյուղատնտեսության մեջ անցկացրեց մի շարք տնտեսապես չհիմնա-
վորված միջոցառումներ, որոնք դանդաղեցրին նրա արտադրողական ուժերի
զարգացումը:

Անձի պաշտամունքի ժամանակաշրջանի մեծագույն չարիքը հանդիսացան
սոցիալիստական դեմոկրատիայի նեղացումը, պարտիական ու պետական
կյանքի լենինյան նորմերի խախտումը, պարտիական-պետական վերահսկողու-
թյան լենինյան սկզբունքի վերացումը: Ստալինը ստեղծել էր պետական ան-
վտանգության օրգանների առանձնահատուկ. միայն իր կողմից վերահսկվող
իրավիճակ, ձգտելով դրանք դնել պարտիայից և իշխանության օրգաններից
վեր: Այս ամենը հանգեցրեց արդարադատության հանրաճանաչ նորմերի
խախտման, անհիմն ռեպրեսիաների, պարտիայի, պետության, ժողովրդական
տնտեսության, բանակի ազնիվ, բայց Ստալինի համար անցանկալի գործիչ-
ների ոչնչացման: Ինչպես ասում է Ն. Ս. Խրուշչովը. «... այն ժամանակ հա-
ճախ մարդը աշխատանքի էր գնում և չգիտեր, արդյոք, կվերադառնա՞ տուն,
արդյոք կտեսնի՞ իր կնոջը, արդյոք կտեսնի՞ իր երեխաներին: Եթե մարդն



ընկներ այնտեղ, որտեղ ընկնում էր, իսկ դուք գիտեք, թե ես ինչի մասին եմ
ասում, ապա այնտեղ ոչ մեկը իրավացի չէր լինում: Մենք ընդմիշտ վերջ ենք
տվել այդպիսի կամայականությանը»:

Եվ դեռ գտնվում են մարդիկ, որոնք բուդդական անվրդովությամբ և հե-
թանոսական քրմերի սառնարյունությամբ փառաբանում են անհատի պաշ-
տամունքը՝ անմեղ մարդկանց արյունով օծված անխուսափելի զոհասեղանով:

Ոչ, նրանց չի հաջողվի վերածնել անձի պաշտամունքի մռայլ ժամա-
նակները:

Պարտիան, ամբողջ ժողովուրդը սրբությամբ պահպանում և զարգացնում
են սոցիալիստական դեմոկրատիզմի հիմքերը: Եվ այդ պատճառով էլ ամբողջ
սովետական ժողովուրդը բուռն ծափահարություններով դիմավորեց Նիկիտա
Սերգեևիչ Խրուշչովի վստահ, վճռական խոսքերը, որոնք ուղղված էին կամա-
յականության և բռնության ջատագովներին. «... իզուր են ջանքերը նրանց,
ովքեր ուզում են փոխել կարգերը մեր երկրում, վահանի վրա վերցնել և պաշտ-
պանության տակ առնել Ստալինի կատարած չարաշահությունները: Մենք հաս-
կանում ենք, թե ինչ նպատակով է դա արվում, և մեր ժողովուրդը, մեր պար-
տիան պատասխանում են՝ այդպիսի դրոշով ավելի լավ է չխցկվեք մեր պար-
տիայի մեջ, մեր ժողովրդի մեջ»:

Այո, այն դրոշակը, որ ուզում են բարձրացնել որոշ մարդիկ, ներկված է
սոցիալիզմի և կոմունիզմի գործի համար պայքարած մարտիկների արյունով,
պարտիային ու հայրենիքին նվիրված ժողովրդի ազնիվ զավակների արյունով:

Այս է անձի պաշտամունքի պրակտիկայի էությունը: Պարզ է, որ անձի
պաշտամունքը խորթ է մարքսիզմ-լենինիզմին, անհանդուրժելի է սոցիալիզմ
և կոմունիզմ կառուցող հասարակարգում:

## ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԻ ՎԵՀՈՒԹՅՈՒՆԸ

Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին հավատարիմ ՍՄԿՊ-ն վիթխարի աշ-
խատանք ծավալեց Ստալինի անձի պաշտամունքը մերկացնելու և նրա վնա-
սակար հետևանքները հաղթահարելու ուղղությամբ: Պարտիական կյանքի
լենինյան նորմերի, սոցիալիստական օրինականության վերականգնումով եր-
կրի կյանքը դրվեց նորմալ հունի մեջ: Մեր պարտիան ղեկավարվում է պատ-
մության մեջ անհատի, առաջնորդի և մասսաների դերի վերաբերյալ եղած
մարքսիստական ուսմունքով: Հայտնի է, թե Մարքսը և Էնգելսը ինչպես էին
քննադատում լասսալականների փորձերը՝ ստեղծելու «Լասսալի քծնալի պաշ-
տամունքը»: Մարքսը և Էնգելսը վճռականորեն հանդես էին գալիս իրենց մե-
ծարման, իրենց անձի պաշտամունք ստեղծելու հնարավորությունների դեմ:
1877 թվականին Բլոսին ուղղված նամակում Մարքսը գրում էր, որ «անհատի
ամեն մի պաշտամունքի նկատմամբ ունեցած հակակրանքի պատճառով» իր
և Էնգելսի մտնելը կոմունիստների ընկերության մեջ «տեղի ունեցավ այն պայ-
մանով, որ կանոնադրությունից դուրս է նետվելու այն ամենը, ինչ նպաստում
է հեղինակությունների առջև սնահավատ խոնարհվելուն...» (К. Маркс и
Ф. Энгельс, Соч., т. 26, изд. 1-ое, стр. 487—488):

Ֆ. Էնգելսը ևս անթույլատրելի էր համարում անհատի փառաբանումը: Իր
նամակներից մեկում նա նշում էր. «Եվ Մարքսը, և ես, մենք միշտ էլ դեմ ենք

ծղել առանձին անձանց նկատմամբ ամեն մի հրապարակային ցուցարարության, բացառությամբ միայն այն դեպքերի, երբ դա ունենում էր որևէ նշանակալից նպատակ. իսկ ամենից ավելի մենք դեմ էինք այնպիսի ցուցարարության, որը մեր կենդանության ժամանակ վերաբերում էին անձամբ մեզ» (նույնը, հատ. 28, էջ 385)։

Անհատների առջև խոնարհվելու դեմ առանձին հակակրանքով էր հանդես գալիս Վ. Ի. Լենինը։ Նա հետևողականորեն պայքարում էր անհատի դերի սխալ ըմբռնման, նրա փառաբանման դեմ։ Նա հատկապես անզիջող էր, երբ հարցը վերաբերում էր անձամբ իրեն։ Հայտնի են բազմաթիվ փաստեր, որոնք վկայում են այդ մասին։ Պարտիայի IX համագումարի վերջին նիստերից մեկում, 1920 թվականի ապրիլի 5-ին համագումարի պատգամավորները մեծ սիրով ու անկեղծությամբ ողջունում էին Վլադիմիր Իլյիչին՝ նրա ծննդյան հիսունամյակի կապակցությամբ։ Երկու հռետորների ողջույնի ելույթներից հետո Վ. Ի. Լենինն ասաց, որ դա միանգամայն բավական է և խնդրեց անցնել գործնական հարցերի քննարկմանը։ Սակայն զգացմունքների անկեղծ հեղեղը շարունակվում էր։ Այդ ժամանակ Վլադիմիր Իլյիչը հեռացավ նիստից, չցանկանալով լսել գովասանական ճառերը։ Որոշ ժամանակից հետո հեռախոսի մոտ կանչելով նիստում նախագահող Գ. Ի. Պետրովսկուն, Վ. Ի. Լենինը համառորեն պահանջեց «գիլյոտինի ենթարկել» այդ «խայտառակությունը», դադարեցնել այդ «գովասանական խոսքերի հեղեղը» (տե՛ս Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, մաս I, էջ 617 և մաս II, էջ 470)։ Ինչպե՞ս այստեղ չհիշել Ստալինի յոթանասունամյակի կապակցությամբ ողջույնների հրապարակումը մեր մամուլում, որը տևեց երկու տարուց ավելի։

Հին բոլշևիկ Մ. Ս. Օլմինսկին պատմում է, թե ինչպես Վ. Ի. Լենինն իր անվան թանգարան կազմակերպելու վերաբերյալ մի խումբ ընկերների առաջարկն արգելեց, դժգոհությամբ ասելով. «Դուք չեք կարող պատկերացնել, թե ինձ համար որքան տհաճ է իմ անձը մշտապես առաջ քաշելը» (О. Лежава, Н. Нелидов. М. С. Ольминский. Жизнь и деятельность. 1962 г., стр. 221—222)։ Ինչպես դարձյալ չհիշել Ստալինի թանգարան-պալատները, նվերների թանգարանը նրա յոթանասունամյակի կապակցությամբ։ Եվ այժմ, երբ բարոյական մաքրության այն բարձունքներից, ուր բարձրացել է պարտիան, ետ ես նայում Ստալինի պաշտամունքի այդ փաստերին, ապա ակամա հիշում ես Իլյիչի հիանալի ճիշտ խոսքերը այն մասին, որ մեծամտացած մարդու դրությունը «բավականին հիմար, խայտառակ և ծիծաղելի դրություն է» (Երկեր, հատ. 30, էջ 676)։

Վ. Ի. Լենինը միայն համեստությունից ու ցուցամոլության նկատմամբ ունեցած հակակրանքից չէր, որ չէր սիրում, երբ չափից ավելի մեծարում էին իր անձը։ Ոչ, այստեղ էությունը կայանում էր հասարակական կյանքում անհատի դերի պրոբլեմի նկատմամբ նրա ունեցած սկզբունքային վերաբերմունքի մեջ, ժողովրդական մասսաներին, պարտիային, նրա կոլեկտիվ առաջնորդին՝ Կենտկոմին առաջին պլանի վրա քաշելու նրա ձգտման մեջ։ Բնորոշ է, որ 1920 թվականին պարտիայի Մոսկվայի կազմակերպության վերահաշվառման ժամանակ հարցաթերթիկի այն հարցին, թե ինչո՞ւմն է արտահայտվում ձեր մասնակցությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիային», Իլյիչը պատասխանել է. «Կենտկոմի անդամ»։ Ղեկավարման կոլեկտիվ օրգանը նրա համար միշտ եղել է ամենաբարձր հեղինակությունը։





Այս է Մարքսի, Էնգելսի, Լենինի սկզբունքային վերաբերմունքը անձի պաշտամունքին, վերաբերմունք, որը հենց շեմքից մերժում է անձի պաշտամունքը որպես կրոնի հետ շաղկապվող իդեալիստական գաղափարախոսություն։ Եվ, իհարկե, աննախանձելի վիճակում են հանդես գալիս նրանք, ովքեր անձի պաշտամունքի մերկացումը մեր պարտիայի, նրա Կենտկոմի կողմից համարում են ոչ ավելի, ոչ պակաս, քան... նահանջ լենինիզմից, որը խախտում է «Լենինի ամբողջական ուսմունքը առաջնորդների, պարտիայի, դասակարգի և մասսաների փոխհարաբերությունների մասին»։

Զարգացնելով Ստալինի անձի պաշտամունքի մասին պարտիայի XX և XXII համագումարի որոշումներն ու հետևությունները, Կենտկոմի հունիսյան պլենումը, ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հուլիսի 14-ի Բաց նամակը վերստին մատնանշում են անձի պաշտամունքի անհամատեղելիությունը կոմունիզմի տեսության և պրակտիկայի հետ։ Արդարացի քննադատության են ենթարկվում ՉԿՊ-ի ղեկավարներն այն բանի համար, որ նրանք «ստանձնել են անձի պաշտամունքի պաշտպանների, Ստալինի սխալ հայացքները տարածողների դեր»։ ՍՄԿՊ Կենտկոմը բացահայտ կերպով և վճռականորեն հայտարարում է, որ ոչ ոքի թույլ չի տա ի չիք դարձնել Ստալինի պաշտամունքի դրսևորման այլանդակ ձևերի դեմ մղված տասնամյա պայքարի պտուղները, ոչ ոքի թույլ չի տա վերածնել և մեր վզին փաթաթել Ստալինի ժամանակների բարքերն ու նորմերը։ «Ոչ ոքի չի հաջողվի մարքսիստ-լենինյաններին, առաջադեմ մարդկանց տանել անձի պաշտամունքի պաշտպանության ուղիով»— Կենտկոմի նամակի այս տողերը արտահայտում են ամբողջ պարտիայի, մեր երկրի բոլոր աշխատավորների խոհերն ու վճռականությունը։

Անձի պաշտամունքի դեմ հետևողական, անհաշտ ու սկզբունքային պայքարի օրինակ է տալիս մեզ պարտիայի լենինյան Կենտկոմը, նրա առաջին քարտուղար Ն. Ս. Խրուշչովը։ Բոլորն էլ մեծագույն հարգանքով են նշում նրա համարձակությունն ու շիտակությունը անձի պաշտամունքի գաղափարախոսության մերկացման գործում։ Եվ գլխավորն այստեղ գործնական այն միջոցառումներն են, որոնք ձեռնարկվել են անձի պաշտամունքի հետևանքները հաղթահարելու և ապագայում նրա երևան գալու հնարավորությունը կանխելու նպատակով։ «Ստալինը այլևս կենդանի չէ,— ասում էր Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXII համագումարում,— բայց մենք հարկավոր համարեցինք պսակազրկել ղեկավարման այն խայտառակ մեթոդները, որ լայն ծավալ էին ընդունել նրա անձի պաշտամունքի իրադրության մեջ։ Մեր պարտիան այդ անում է, որպեսզի այդօրինակ երևույթներն այլևս երբեք չկրկնվեն» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 326)։

Պարտիան լիովին վերականգնեց պարտիական կյանքի լենինյան նորմերը, կոլեկտիվ ղեկավարության սկզբունքները։ Զարգանում և կատարելագործվում է ներպարտիական դեմոկրատիան։ Այդ բանն իր արտահայտությունն է գտնում պարտիայի համագումարների և Կենտկոմի պլենումների կանոնավոր գումարման մեջ, քաղաքական կարևորագույն որոշումների, պարտիայի փաստաթղթերի համաժողովրդական քննարկումների մեջ։ Բավական է ասել, որ ՍՄԿՊ Ծրագրի նախագծի քննարկմանը մասնակցեցին ավելի քան 70 միլիոն մարդ։ Լիովին վերականգնվել է սոցիալիստական օրինականությունը,

Ռևոլյուցիոն շարժման խոշոր առաջնորդներն աչքի են ընկնում համեստությամբ, մեծամտության բացակայությամբ, ապրում են ժողովրդի շահերով և անխզելիորեն կապված են նրա հետ։ Նրանք միշտ խստորեն հաշվետու են ժողովրդին, հասարակությանը և պատասխանատու են նրա առջև իրենց գործողությունների համար։ Ռևոլյուցիոն պրոլետարիատը հպարտացել և հպարտանում է իր առաջնորդներով։ Մեծագույն առաջնորդներ են եղել Մարքսը, Էնգելսը, Լենինը։ Նրանց մեջ մարմնավորված էր այն ամենայն լավագույնը, որ հատուկ է ռևոլյուցիոն պրոլետարիատին։ Բոլոր մարդկանցից մեծագույնը՝ Վլադիմիր Իլյիչ Լենինը նույնքան մեծ էր իր համեստությամբ, կարգապահությամբ, պարտիայի ու ժողովրդի հանդեպ ունեցած պատասխանատվության գիտակցմամբ։ «Հասարակ է ինչպես ճշմարտությունը»—բանվորների կողմից տրված Լենինի այս դիպուկ բնութագիրը բացահայտում է լենինյան տիպի առաջնորդի ամբողջ էությունը։ Լենինը չէր կարող ապրել, աշխատել, զարգացնել տեսությունն առանց աշխատավորների հետ ունեցած կապի։ Իր ամբողջ գործունեության ընթացքում Վ. Ի. Լենինը ոչ մի անգամ չի չարաշահել իր անսահման հեղինակությունը՝ առանց կոլեկտիվի կամքի ու համաձայնության այս կամ այն հարցը լուծելու համար։ Լենինը մշտապես հանդես էր գալիս աշխատավորների առաջ, գնում էր գործարանները, ֆաբրիկաները, գյուղերը, ընդունում էր ժողովրդի հարյուրավոր պատվիրակների։ Դրա համար նա չէր խնայում ուժերը, չէր խնայում կյանքը։ Լ. Ֆոտիևայի վկայությամբ, քաղաքացիական պատերազմի ահեղ տարիներին Վ. Ի. Լենինը ամենավտանգավոր և բարդ հանգամանքներում մասսայական միտինգներում հանդես է եկել, ոչ լրիվ տվյալներով, 216 անգամ (տե՛ս Լ. Ֆոտիևա, Լենինի կյանքից, 1960, էջ 146)։

Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում համաշխարհային պրոլետարիատի այնպիսի ականավոր առաջնորդներին, ինչպիսիք էին Վ. Լիբկնեխտը, Ա. Բեբելը, Կ. Լիբկնեխտը, Ռ. Լյուքսեմբուրգը, Ի. Բաբուշկինը, Յա. Սվերդլովը և ուրիշներ։ Նրանց գործունեության մեջ, նրանց վարքագծի մեջ նա տեսնում էր պրոլետարական առաջնորդների լավագույն գծերի արտահայտությունը։ Եվ ամենաբարձր ու վճռական բանը, որ Լենինը տեսնում էր նրանց բնավորության մեջ, դա սերն էր դեպի ժողովուրդը, անխզելի կապը նրա հետ։ Հենց այդ պատճառով էլ, ասում էր Լենինը, օրինակ, այնպիսի մի ղեկավար, ինչպիսին է Յա. Մ. Սվերդլովը, «կարողանում էր իր մեջ մարմնավորել ոչ միայն բանվորներից սիրված մի առաջնորդ, ոչ միայն մի առաջնորդ, որն ամենից ավելի լայն և ամենից ավելի շատ գիտեր պրակտիկան, այլև առաջավոր պրոլետարների մի կազմակերպիչ» (Երկեր, հատ. 29, էջ 94)։

Վ. Ի. Լենինը բացահայտելով պրոլետարական առաջնորդների հայտնաբերման ու առաջքաշման օրինաչափությունը, մատնանշում էր, որ «մեծ ռևոլյուցիաներն իրենց պայքարի ընթացքում առաջ են քաշում մեծ մարդիկ և այնպիսի տաղանդներ են հայտաբերում, որոնք առաջ անհնար էին թվում» (Նույն տեղ, էջ 96)։

Փոքր-ինչ ձևափոխելով այս միտքը, կարելի է ասել. կոմունիզմի ծավալուն կառուցման մեծ դարաշրջանը առաջ է քաշում այդ դարաշրջանին արժանի մարդիկ, հայտաբերում է այնպիսի տաղանդներ, որոնք դեռ միայն վերջերս, մեկ աստվածացված անձնավորության բռնության պայմաններում, անհնար էին թվում։ Կոմունիզմի եռուն, ստեղծագործական աշխատանքով լի առօրյան արդեն նախապատրաստել և առաջ է քաշել, օգտագործելով լենինյան արտա-



հայտությունը, «...ամենից վարպետ կազմակերպիչներ, պարտիայի ամենատաղանդավոր քաղաքական առաջնորդներ, որոնք հարկ եղած րոպեին ընդունակ են վճռական մարտի լոզունգ տալու և ղեկավարելու այդ մարտը» հանուն կոմունիզմի (Երկեր, հատ. 5, էջ 25)։ Պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն լենինյան տիպի ականավոր գործիչ Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ՝ ահա պարտիայի ու ժողովրդի հեղինակավոր կոլեկտիվ առաջնորդը։ Նրա ճանաչված ղեկավարն է հանդիսանում ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահությունը, որը ընտրվել է պարտիայի կամքով։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի կողմից գլխավորվող պարտիայի Կենտկոմը տալիս է համեստության, ժողովրդայնության, գործարարության օրինակ, հատկություններ, որոնք այնքան երկար ժամանակ պակասում էին մեր պարտիայի կյանքում։ Աշխատավորների հետ ամենօրյա կենդանի շփման տրադիցիան, որ ստեղծել էր մեծ Լենինը, այժմ ամենալայն զարգացում է ստացել։ Չկա այնպիսի խոշոր կառույց, տնտեսական շրջան, միութենական ռեսպուբլիկա, խոշոր ձեռնարկություն, որտեղ եղած չլինեն պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը, Նախագահության անդամները, ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարները։ Այժմ ակներև է, որ «անփոխարինելի» մարդկանց, «բոլոր և ամեն տեսակի գիտությունների կորիֆեյների» ժամանակը անվերադարձ կերպով անցել է։

ՉԿՊ-ի ղեկավարների տրամաբանությամբ թույլատրելի է մասսայական ռեպրեսիաների և աղաղակող ապօրինությունների հրահրողին անվերջ փառաբանել, իսկ այդ ամենի դեմ պայքարող, կոմունիզմի կառուցման գործը մեծապես առաջ մղող լիդերներին՝ զրպարտել։ Ահա թե ուր է տանում նրանց դոգմատիզմն ու պառակտիչ վարքագիծը։

Մեր պարտիան մերժում է անձի պաշտամունքը, բայց արդարացի կերպով ընդգծում է իր ականավոր ղեկավարների դերը, պատշաճորեն գնահատելով նրանց ծառայությունները։

Իր ելույթներին այնքան հատուկ շիտակությամբ Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXII համագումարում ասում էր. «Համագումարում տեղի ունեցած շատ ելույթներում, այլև հաճախ մեր մամուլում, խոսելով մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի գործունեության մասին, ինչ-որ առանձնահատուկ կերպով շեշտում են իմ անձնավորությունը, ընդգծում են իմ դերը պարտիայի ու կառավարության կարևորագույն միջոցառումների անցկացման գործում։

Ես հասկանում եմ այն բարի զգացմունքները, որոնցով ղեկավարվում են այդ ընկերները։ Թույլ տվեք, սակայն, ամենայն ուժով ընդգծել, որ այն ամենը, ինչ ասվում է իմ հասցեին, պետք է վերագրվի մեր լենինյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հասցեին, Կենտկոմի Նախագահության հասցեին»։

Իր դիրքի և հեղինակության նկատմամբ առաջնորդի հենց այդպիսի մոտեցումը կանխում է անհատի պաշտամունքի երևան գալու, կոլեկտիվից կտրվելու հնարավորությունը։ Արտահայտելով լենինյան ոգին ու հայացքները ղեկավարների, պարտիայի ու ժողովրդի հարաբերակցության մասին, Ն. Ս. Խրուշչովը հայտնեց բոլորին հարազատ մի միտք. «Պետք է դեպի պարտիան և նրա ղեկավարությունը հարգանք դաստիարակել ոչ թե երկյուղով, այլ ժողովրդի հետ սերտ կապով վաստակել այդ հարգանքը, ժողովրդի սերը, նրա պաշտպանությունը, պետք է ժողովրդի հետ բաժանել նրա աշխատանքն ու պայքարը։ Դա ճիշտ և ամենաուժեղ միջոցն է»։ Կոմունիզմի համար մղած իր պայքարում միայն այդ միջոցն է կիրառում պարտիայի լենինյան Կենտկոմը։

---

# ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ԱՌԹԻՎ

## I

ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի հրատարակչությունը վերջերս լույս ընծայեց Ց. Խանզադյանի Հոդվածների ժողովածուն, որն առիթ ծառայեց պրոֆ. Հ. Գաբրիելյանին հանդես գալու մեր ամսագրի սույն համարում։ Տպագրելով նրա գրախոսականը, անհրաժեշտ ենք համարում ասել, որ խմբագրությունը համամիտ չէ նույն հարցի շուրջը Հ. Գաբրիելյանի անցյալում հրապարակած բրոշյուրի մի շարք բռնազբոս և հախուռն ընդհանրացումներին։

Նախ մի քանի խոսք այն մասին, թե ով է Ց. Խանզադյանը։

Տակավին երիտասարդ տարիներին, ինչպես ինքն է գրում, հարել է դաշնակցությանը, այնուհետև՝ սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպության (սպեցիֆիկների) խմբակին։ Նրա ժողովածուն հրատարակողներին քաջ հայտնի է, որ իր կյանքի ընթացքում Ց. Խանզադյանը երբեք չի հարել բոլշևիկներին։ Սակայն խնդիրն այն է, որ սովետական կարգեր հաստատվելուց հետո, նա մի շարք այլ մտավորականների հետ միասին կանգնեց սովետների պաշտպանության դիրքերում։ Այդ ժամանակամիջոցում, անշուշտ, նա շնորհակալ և լուրջ գործ է կատարել թարգմանական գրականության, լեզվաշինարարության, հատկապես մանկավարժության բնագավառում։ Որ նրա քննադատական մի քանի հոդվածները որոշ արժեք են ներկայացնում մեր գրաքննադատության պատմության համար՝ դա անհերքելի է։ Բայց նրա գրականագիտական համեստ ժառանգությունը վերցրած ամբողջովին՝ համեմված է մարքսիզմին խորթ հայացքներով, տառապում է ակներև էկլեկտիզմով, մի հանգամանք, որը փաստորեն շղարշում են գրքի առաջաբանի (կամ երկու խոսքի) հեղինակներ՝ Հ. Ղանալանյանը և Ա. Ինճիկյանը։

Բանն այն է, որ Ց. Խանզադյանի ժողովածուում տեղ գտած արվեստի և գրականության վերաբերող արատավոր հայացքներն ըստ էության արձագանքում են բուրժուական գաղափարախոսության այն նկրտումներին, որոնց դեմ պարտիան կոչ է անում անհաշտ պայքար մղելու։ Ինչպես երևում է ժողովածուի ո՛չ կազմողը և ոչ էլ խմբագիրները հաշվի չեն նստում պատմական կոնկրետ ժամանակի հետ։ Նրանց համար կարծես թե ինքնանպատակ է լույս աշխարհ հանել անցյալի այս կամ այն գործչի գրական ժառանգությունը։ Սակայն դա մի խոր մոլորություն է, որն էապես վնասում է նոր մարդու աշխարհայացքի ձևավորմանը։

Պրոֆ. Հ. Գաբրիելյանն իր հոդվածում ճիշտ է գնահատում Ց. Խանզադյանի ժողովածուի արատավոր մի քանի թեզերը։ Սակայն, դժբախտաբար նա չի անդրադարձել գրքի էական այլ կողմերին, որոնց մասին անհրաժեշտ ենք համարում ասել մի քանի խոսք։

Հիրավի, Ց. Խանզադյանը որպես էսթետացող գրականագետ իր աշխատության մի շարք էջերում զարտուղի կերպով պրոպագանդում է «արվեստը արվեստի համար» բուրժուական սկզբունքը։ Այսպես, օրինակ, ժողովածուի 104-րդ էջում կարդում ենք, որ Սուրխաթյանն իր Գրական գոհարներում նպատակ է դրել «...մի կողմից բնորոշել գրողների դեմքը, մյուս կողմից—ընթերցողի ձեռքը տալ գեղարվեստական, ուրեմն և սոցիալական արժեք ունեցող գրական արտադրություններ։ Մի խնդիր, որը միանգամայն անլուծելի է, և ակներև պատճառով՝ գիտական-պատմական և գեղարվեստական պահանջները հաճախ ամենևին չեն բռնում իրար» (ընդգծումը մերն է. խմբ.)։

Այսպիսով, Ց. Խանզադյանը գտնում է անհարիր, երբ որևէ գրական երկ գրվում է թե՛ հասարակական և թե գեղարվեստական պահանջների համեմատ։ Ըստ Խանզադյանի, եթե գեղարվեստական գործն ունի պատմագիտական արժեք, ապա այն չի կարող գեղարվեստական լինել։ Նրա կարծիքով գեղարվեստական երկը չի կարող միաժամանակ սոցիալական արժեք ունենալ։ «Զուտ» արվեստի ելակետից մեկնող Ց. Խանզադյանն այս երևույթը համարում է բնական։ Հենց այս տեսանկյունից էլ նա վիճարկում է Ա. Մյասնիկյանի՝ մի քանի գրողներին տված գնահատականները։

Սակայն դժվար չէ ապացուցել, որ «զուտ» արվեստի այդ տեսակետը վաղուց հերքված է բոլոր ժողովուրդների արվեստի զարգացման հարուստ պատմությամբ, այդ թվում և հայ գրողների բազմաթիվ երկերով։ Ուշագրավ է, որ գրականագետ Սուրխաթյանի միտումը՝ գիտական-պատմականը զուգորդելու գեղարվեստականի հետ, Ց. Խանզադյանը գնահատում է որպես «անգիտական» մեթոդ և «հերքում է» Սուրխաթյանի «խակ ընդհանրացումները»։ Սակայն կյանքը վաղուց հերքել է Ց. Խանզադյանի մոլորությունները։ Թեև մեր օրերի ընթերցողը հեշտ կնկատի նրա այդ մոտեցման ակներև խախուտությունը, բայց և այնպես նման տեսակետի պրոպագանդումն այսօր բացահայտորեն խանգարում է մեր գրականության զարգացմանը։

Մի քանի այլ էջերում ևս Ց. Խանզադյանի էսթետիկական «նրբանկատությունը» խանգարել է նրան ճիշտ գնահատելու սովետական գրականության առաջին տարիների քիչ թե շատ նշանակալի գրական երկերը, որի մասին խոսում է Հ. Գաբրիելյանը։

Ի դեպ, արդի մի քանի գրականագետներ, որոնք քիչ գործ չեն կատարել սովետահայ գրականության պատմության մշակման ասպարեզում, երբեմն չափից ավելի խարազանում են 20-ական թվականների այն կոմունիստ գրականագետներին, որոնք այս կամ այն կերպ տուրք են տվել «ձախության մանկական հիվանդությանը» և գռեհիկ սոցիոլոգիզմին։ Այդ ամենը հասկանալի է։ Բայց դժվար է գտնել այն հարցի պատասխանը, թե ինչու, երբ խոսքը վերաբերում է նախառևոլյուցիոն շրջանի գրողների և գրաքննադատների ակներև նիհիլիստական, հաճախ «ձախ», իսկ մերթ բացահայտ բուրժուա-կղերական մոլորություններին՝ նրանք լռություն են պահպանում կամ լավագույն դեպքում օձիքներն ազատում են նրանց մի թեթև կծմթելով։ Չէ՞ որ Ց. Խանզադյանի ժողովածուն շեշտված նիհիլիստական միտում ունի, որն «անտեսվեց» Գրական թերթում Ս. Աղաբաբյանի գրախոսության մեջ։ Թերթի խմբագրությունը չէ՞ր ստուգել գրախոսականը։

Երբ խոսք է լինում Ց. Խանզադյանի աշխարհայացքի գնահատման վերաբերյալ, ապա չի կարելի մոռացության տալ նրա 1913 թվականին գրած մի նամակը, որտեղ ասված է. «Բաքվի ձայնը» գտնվում է դեմոկրատական տարրերի ձեռքին, և լինելու է անկուսակցական-դեմոկրատիայի օրգանը, սկսած ամենաակտիվներից մինչև նվաստս։ Աջակցելու-աշխատակցելու են տեղական բոլոր մտավորականները, որոնք անցյալ տարիները կուսակցական շաբաթաթերթեր էին հրատարակում...» (Ընդգծումները մերն են—խմբ., էջ 257)։

Մեկ այլ նամակ այս ոգով Ց. Խանզադյանը գրել է. Հ. Թումանյանին նույն թվականին։

Դա հենց այն ժամանակաշրջանն էր, երբ Ց. Խանզադյանի պես գործիչները «հայ արմատական դեմոկրատիայի» ու «բոլոր մտավորականների» դրոշով ակներևաբար հակադրվում էին մտքի բոլշևիկյան հոսանքին։

Մի՞թե Ց. Խանզադյանին զանազան ասեկոսեներով մեծարողները չեն նկատել նրա քաղաքական վերոհիշյալ հավատո հանգանակը, որը համենայնդեպս պետք է հարկադրեր նրանց պարտիական մոտեցում ցուցաբերելու անպարտիականության շղարշով ծվարողների ուղին գնահատելիս։

Ինչպես տեսնում ենք, Ց. Խանզադյանը մատնում է իր աշխարհայացքի «անկուսակցականությունը»։ Սա հենց այն ծպտյալ և մոլի կուսակցականությունն է, որը խոչընդոտում է մեզ առաջ մղելու գրականության ու արվեստի ծաղկման գործը։ Սա այն տարրական ճշմարտությունն է, որը մոռացության տվեց Գրական թերթը, երբ անվերապահորեն գովեց Խանզադյանի ժողովածուն։

Գրականության և արվեստի գործիչների հետ հանդիպման ժամանակ Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Եթե խիստ արտահայտվենք, հասարակության մեջ, իսկն ասած, անպարտիականություն չկա։ Եվ նա, ով ազդարարում է իր անպարտիականությունը, այդ անում է քողարկելու համար իր անհամաձայնությունը պարտիայի հայացքներին ու գաղափարներին, անում է կողմնակիցներ հավաքագրելու համար։ Պատմության մեջ բազմիցս եղել է, երբ ամենամոլի ռեակցիոներներն ու հակառևոլյուցիոներները հանդես են եկել անպարտիականության լոզունգով և միայն հետո է բացահայտվել նրանց բուրժուական պարտիականությունը» (Ն. Ս. Խրուշչով, Բարձր գաղափարայնությունը և գեղարվեստական վարպետությունը սովետական գրականության և արվեստի մեծ ուժն են, էջ 41)։

Արվեստի և գրականության պարտիականության լենինյան վերոհիշյալ սկզբունքի կիրառումը մեր գրականագետների և արվեստագետների գաղափարայնության էական չափանիշներից մեկն է։ Այդ սկզբունքն է, որ հաճախ անտեսում են անցյալի իդեալականացնողները և այդպիսով իսկ խանգարում պարզ տեսնելու և ըստ արժանվույն գնահատելու այսօրվա մեր վիթխարի նվաճումները։

Այն, ինչ կատարվել է Ց. Խանզադյանի Ալեքսանդր Մյասնիկյան բրոշյուրի հետ, հարուցում է Ա. Մյասնիկյանի բոլոր համախոհների զայրույթը։ Տարօրինակ է և դատապարտելի, երբ Ց. Խանզադյանի ժողովածուի խմբագիրները հանդուրժել են, որպեսզի բրոշյուրից դուրս նետվեն այն պարբերությունները, որոնք հաստատում են Ա. Մյասնիկյանի բարձր ինտերնացիոնալիստական ոգին և նրա ծառայությունները մատուցած Անդրկովկասյան ֆեդերա-

ովքեր մնածների ձևով ականներ են տեղադրում սովետական գիտության և արվեստի ընդարձակ դաշտում։ Տարօրինակ տրամաբանություն։ Մ. Խորենացին, Ե. Կողբացին, Գ. Անհաղթը, Գ. Տաթևացին, Ա. Շիրակացին, Խ. Աբովյանը, Ստ. Շահումյանը և մեր դարի շատ ականավոր մտածողները զուրկ են եղել աշխարհայացքից։ Այս է Յ. Խանզադյանի վերոհիշյալ թեզի հետևությունը, ավելի ճիշտ՝ անհեթեթությունը։

Հիշենք, որ այդ տողերը գրված են 1917 թվականին, երբ համենայնդեպս Մ. Նալբանդյանից հետո հայ կյանքի հասարակական երկնակամարում աշխարհայացքի տեր բազմաթիվ մարդիկ են եղել։ Այդ խղճուկ փիլիսոփայությունը բխում է Յ. Խանզադյանի նիհիլիստական այն ըմբռնումից, ըստ որի հայ սոցիալական փիլիսոփայությունն աղքատ է այն պատճառով, որ նրա բովանդակությունը ազգային-ազատագրական տենչերն են։ Սա ևս մի ական է, որը «վրիպել» է ժողովածուի հրատարակիչների ուշադրությունից։ Բայց ցավն այն է, որ այդ «վրիպումները» մեկենասներ ունեն։

Շատ լավ կլինի, որ հաստատվի այսպիսի մի կանոն. այս կամ այն երկը հրատարակելիս կազմողն ու խմբագիրը պարտավոր են հիշատակել թե ո՞ր գործերը և ի՞նչ նկատառումներով չեն զետեղվում տվյալ ժողովածուում։ Այլ կերպ ասած, խմբագիրները պետք է հանդես բերեն իրենց պարտիականությունը։ Եվ ոչ թե շարունակեն անցյալի երկերը հրապարակել առանց որևէ առաջաբանի, կոմենտարների և նույնիսկ ծանոթագրությունների։

Յ. Խանզադյանի ժողովածուում ի թիվս մի քանի արժեքավոր նամակների, զետեղված են նաև իր կնոջն ուղղված երկու նամակները ռուսերեն լեզվով, որոնք բացառապես վերաբերում են Լ. Տոլստոյի գրական մեծությանը և նրա կնոջը՝ Սոֆյա Անդրեևնայի վարքագծին։

Սովետական իշխանության տարիներին հսկայական գործ է կատարված մեծ գրողի երկերի հրատարակման և տոլստոյագիտության մարզում։ Միանգամայն հասկանալի պատճառներով նշված երկու նամակներում Յ. Խանզադյանը միակողմանի է մոտեցել Տոլստոյ-մտածողին, առաջին պլանի վրա դնելով հանճարեղ արվեստագետի թույլ կողմերը։ Նա դժգոհ է այն բանից, որ կան մարդիկ, որոնք «Տոլստոյի բարոյական անձնավորության և տեսության գնահատման մեջ միշտ վերապահումներ են արել... կատաղի հարձակվել են նրա վրա անհետևողականության, համարյա թե կեղծավորության համար» (էջ 244)։ Տոլստոյի լավագույն բնորոշումը Յ. Խանզադյանը համարում է այն, որը պատկանում է Մ. Ստախովիչին՝ Տոլստոյը Ռուսիայի խիղճն է։

Լենինն ընդգծել է, որ Լև Տոլստոյի, համաշխարհային այդ հսկայի թույլ կողմերը, բարոյակրոնական քարոզը՝ մի կալ հակառակ չարին, խանգարել են աշխատավորության ազատագրական գործին։ Բոլոր նրանք, ովքեր Տոլստոյին հայտարարում են «ընդհանուր խիղճ», «կյանքի ուսուցիչ», ասում է Լենինը,— գիտակցաբար տարածում են լիբերալների հայացքները, Տոլստոյի ուսմունքի հակառևոլյուցիոն միտումները։

Բացի այդ, Յ. Խանզադյանն իր կնոջը գրում է, թե Ս. Անդրեևնայի դեմ արված Վ. Չերտկովի հարձակումները հիմքից զուրկ չեն։ Իբր թե Տոլստոյի տնից հեռանալու մեջ մեղավոր է և նրա կինը, որ Տոլստոյը դժբախտ է եղել իր սիրո մեջ և այլն։ Այստեղից՝ Յ. Խանզադյանի լալագին հառաչանքները հօգուտ տանջահար Տոլստոյի։ «Դուցե, նա (Տոլստոյը — Խմբ.) իսկապես իր լավագույն զգացմունքներում շատ վիրավորված է իր կնոջից։ Այո, բոլոր գյուղացիները հիացած են Չերտկովի անձնավորությամբ։ Դա անսովոր հոգու տեր մարդ է» (էջ 248)։

Գտնվելով ժամանակի լիբերալ մամուլի ազդեցության տակ, Յ. Խանզադյանը կարող էր նման միակողմանի և սխալ հայացք ունենալ մեծ գրողի դրամայի նկատմամբ։ Բայց չէ որ սովետական տոլստոյագիտությունն այսօր այն հաստատ համոզմանն է, որ տնից հեռանալու Լև Տոլստոյի դրամայում առաջնակարգ դեր է խաղացել նրա վաղուց հասունացած հոգեկան ճգնաժամը, այլ ոչ թե ընտանեկան կոնֆլիկտը։

Ժամանակին անդրադառնալով այդ խնդրին Մ. Գորկին գրել է, թե Վ. Չերտկովը իր Уход Толстого գրքում ցանկացել է արատավորել մեռած Սոֆյա Անդրեևնայի պատիվը։ Վերջինս բոլորովին չէր վստահում իր ամուսնու հետևորդներին և արդարացիորեն ջանում էր հեռացնել նրանից բոլոր պորտաբույծներին։ Ս. Անդրեևնան հասկանում էր և տեսնում ամուսնու ստեղծագործության վեհությունը և հոգևոր կյանքի լարվածությունը։ Միայն նրա շնորհիվ, շարունակում է Գորկին, Տոլստոյի գլխին չթափվեցին շատ աղտեղություն և կատաղության լորձունքներ։ Սոֆյա Անդրեևնան եղել է իր ամուսնու մտերիմ, հավատարիմ և, կարծյոք, միակ ընկերը կես դարի ընթացքում։ Տոլստոյի պես մարդուն ընկերություն անելը միայն բավական է, որպեսզի հերքվի Ս. Անդրեևնայի հասցեին արված հերյուրանքը և հարգվի նրա հիշատակը (Ա. Մ. Գորկի, երկերի ժողովածու, հ. 14, էջ 305—306, 1961 թ.)։

Չնայած Մ. Գորկու հեղինակավոր այս կարծիքին, Յ. Խանզադյանի գրքի ծանոթագրության մեջ ասված է. «...չհասկանալով և չհամակրելով ամուսնու գաղափարները, Սոֆյա Անդրեևնան Տոլստոյի կյանքի վերջին տարիներին բա-



ցասական դեր էր բռնել նրա նկատմամբ» (էջ 267)։ Մեր կարծիքով, այս հայտարարությունը խիստ միակողմանի է և կարող է ապակողմնորոշել ընթերցողներին։

Այդ ամենից բացի, որևէ կերպ չի կարելի հանդուրժել, երբ այժմ Յ. Խանզադյանի բերանով, սովետական գրականության ձևավորման առաջին տարիներին լուրջ քայլերն ու պարտիայի միջոցառումները համարվում են իբրև երիտասարդ բանաստեղծներին «անդունդ գլորող վակխանալիա»։ Չենք կարող լռությամբ անցնել Յ. Խանզադյանի այն արտառոց նիհիլիզմի կողքով, երբ նա գրում է. «Հայ գրականությունը զարմանալի աղքատ է համամարդկային գաղափարներով ու տիպերով» (էջ 112)։ Չենք կարող չծանակել նրա այն համոզմունքը, թե իբր հայ գրականության «խղճուկ փիլիսոփայության» հիմքը ազգային «ինքնապաշտպանության գաղափարն է կազմում»։ Մեր ժողովրդի պատմությունից հայտնի է, որ ազգային-ազատագրական գաղափարը գրականությունը ոչ թե աղքատացրել է, այլև նրան նոր լիցք է տվել։

Այս ամենից հետո չի կարելի թերագնահատել այն վնասը, որը պատճառում է մեր գրականությանը անքննադատ վերաբերմունքն անցյալի արժեքների նկատմամբ։ Դժբախտաբար, նման քայլ թույլ տվեց գրականագետ Ս. Աղաբաբյանը, երբ «Գրական թերթում» անզուսպ գովերգեց Յ. Խանզադյանի գիրքը։

Յ. Խանզադյանի երկերի ժողովածուն ունի և անվանացանկ, որում զետեղված անուններից 50 անձնավորությունների անունները չեն հիշատակված։ Այս անփութությունը ԳԱ հրատարակչության համար հազվագյուտ երևույթ չէ։

## II

Անցյալի հասարակական և գրական գործիչների երկերը հրատարակելիս, պետք է առաջնորդվել միայն մի սկզբունքով, թե տվյալ հեղինակի երկը որչափով է ընդարձակում մեր գիտելիքների հորիզոնը, օգնում մեզ ըմբռնելու անցյալը և առավել՝ կառուցելու նորը։ Այս բնագավառում մեր ռեսպուբլիկայում բավարար չէ գործերի վիճակը որոշ կլասիկների հրատարակության գործում։

Շատ լավ կլիներ, որ Յ. Խանզադյանին հարգող գրականագետները տվյալ դեպքում հաշվի առնեին նրա հետևյալ միտքը. «Ամենամեծ հանճարն անգամ, իր դարաշրջանի ուրույն դրոշմը կրելով իր վրա, երբեք ազատ չէ միանգամայն ժամանակի սխալներից և մոլություններից։ Այսօրվա մանկամիտ դպրոցականը այնպիսի բաներ գիտե, որ անցյալ դարերի ամենախորիմաստ հանճարը չգիտեր» (էջ 13)։

Մեծ փորձ է կուտակված հայ ժողովրդի անցյալի գրական ժառանգության յուրացման ասպարեզում։ Սովետական իշխանության տարիներին անգնահատելի գործ է կատարված այս ուղղությամբ։ Բայց և այնպես այստեղ կա մեզ անհանգստացնող լուրջ երևույթ, որը կարելի է ցույց տալ մի քանի օրինակներով։

Առարկելով նարոդնիկության պարագլուխ Միխայլովսկուն, Լենինն ասում էր, որ հասարակական գործիչը չի կարող չհամակրել և չհարել այս կամ այն դասակարգին, չմասնակցել նրա պայքարին։ Լենինյան այս թեզը մեզ համար պարտադիր է նաև արվեստի և գրականության բնագավառում։ Կոմունիստական պարտիականությունն ի հակակշիռ բուրժուականի, անսահման հորիզոններ է բացում մարդու անհատական հակումների և ստեղծագործական մտահղացումների համար։ Դրա փայլուն ապացույցը սովետական արվեստի հարաճուն վերելքն է։ Ռևոլյուցիոն պարտիականությունը ժողովրդի ընդերքից կյանքի է կոչում նորանոր տաղանդներ, որոնք նոր երանգ ու թարմություն են հաղորդում արվեստի գործերին։

Չնայած այս բանին, մեզ մոտ տակավին որոշ կլասիկների երկերի հրատարակչական ապարատի վրա «անպարտիականության» դրոշմն է գրված։ Ոմանք կամա թե ակամա կլասիկներին դարձնում են սրբապատկերներ, հաճախ խույս տալով արծարծելու նրանց ստեղծագործության ստվերոտ կողմերը։

Վերցնենք թեկուզ Շիրվանզադեի երկերի 10-րդ հատորը, որը խմբագրել են Մ. Մկրյանը, Գ. Բալասանյանը և Հր. Թամրազյանը։ Այս, ինչպես և Շիրվանզադեի մի շարք այլ հատորները զուրկ են առաջաբաններից, կոմենտարներից։ Սա էական և խոշոր պակասություն է։ Կլասիկներին այս ձևով հրատարակել չի կարելի։ Օրինակ, ի՞նչ հասկանա անփորձ ընթերցողը Շիրվանզադեի հետևյալ տողերից. «Դնել հայ գրականությունը եվրոպական գրականությունների շարքը, անկասկած ծիծաղելի կլիներ, ինչպես և անհեթեթ բան կլիներ հայ ազգի դեռևս աղքատիկ կուլտուրան համեմատել առաջնակարգ ազգերի դարավոր կուլտուրայի հետ» (էջ 142)։

Գրականության արժանիքը վերածելով ամենից առաջ հեղինակի «ստեղծագործական ոգու» և «գեղեցիկ ճաշակի» տեսանկյունից, Շիրվանզադեն եզրակացնում է. «այս տեսակետից նայելով, դժվար է ասել, թե մենք՝ հայերս ունենք գեղարվեստական գրականություն» (էջ 142)։ Դեռ ավելին, նա շեշտում է, որ եթե մեր գրականությունն անցկացնենք «...գեղարվեստի նույնիսկ ամենատարրական պայմանների քուրայով», «ահագին կույտ մոխրի մեջ» զուտ մետաղի հատիկներ հազիվ թե գտնենք։ Դժվար չէ հասկանալ, որ մեծ վիպասանը միակողմանի էր իր ընդհանրացման մեջ։ Հենց այստեղ կարիք

*կար խմբագրության համոզիչ բացատրությանը։*

*Մենք հեռու ենք այն մտքից, թե այժմ պետք է հայտ ներկայացնել կլասիկներին նրանց մոլորությունների համար։ Ամենևին։ Սակայն մենք պահանջում ենք, որպեսզի նրանց երկերը ընթերցողներին հրամցվեն լուրջ կոմենտարներով, նրանց ժամանակաշրջանը բացահայտող առաջաբանով և հանգամանալի ծանոթագրություններով։ Այս է, որ հաճախ չի կատարվում մեզ մոտ։ Ահա թե ինչու չի կարելի լռության մատնել այն փաստը, որ որոշ գրականագետներ կլասիկների բերանով ի թիվս այլ բաների, քարոզում են և արվեստի անպարտիականություն։ Օրինակ, Շիրվանզադեի 10-րդ հատորում ասված է. «Կուսակցական ոգին օգտավետ է միայն հասարակական գործերի վերաբերմամբ, բայց երբ նա զուտ գրականության մեջ է խառնվում, սկսում է վնասակար դառնալ։ Գրականությունը բարձր է ամեն մի կուսակցությունից։ Նա ոչ ձեզ է պատկանում, ոչ ինձ, նա ամենի սեփականությունն է։ Եվ երբ մեկը, կուսակցական նեղ հոգուց դրդված, ձեռք է բարձրացնում նրա վրա, աններելի հանցանք է գործում։ Բացի դրանից, զուտ գրականությամբ պարապող մարդն իր արվեստի մեջ չէր կարող կուսակցական լինել և եթե եղավ, կնշանակի գրականության բարձր ուժը և վսեմությունը չէ ըմբռնում։ Այդպիսին արժանի չէ զուտ գրականական ուժ կոչվելու» (էջ 156—ընդգծումը մերն է. խմբ.)։*

*Պարզ է, որ մամուլի պրոպագանդան արվեստի և գրականության հարցերում իր նպատակին չի հասնի, եթե մեր հրատարակչությունները կլասիկների միջոցով համառորեն պրոպագանդեն արվեստի անպարտիականություն։ Երբ Շիրվանզադեի բերանով ասվում է, թե մենք չենք կարող բանաստեղծից պահանջել, որ նրա ստեղծագործությունը կուսակցական լինի, դա ամենևին էլ չի նպաստում մեր գրականության ճիշտ զարգացման գործին։ Կամ Շիրվանզադեն ասում է, թե նեղ-կուսակցական շահերը բնավ չեն կարող ոգևորել բարձր իդեալներ ունեցող բանաստեղծին, ոչ միայն այդ—այլև բնականաբար պետք է զզվեցնեն նրան (էջ 180)։ Այս ըմբռնումն առանց մեկնաբանությունների հրապարակելը լուրջ վնասում է մեր գրական զարգացմանը։*

*Մինչդեռ գրականագետ Հ. Թամրազյանն իր* Շիրվանզադե *աշխատության մեջ այն ճիշտ հայացքն է զարգացնում, որ մեծ վիպասանն իր «...սոցիալական համակրանքներով, գրական-քննադատական սկզբունքներով, մեթոդով, գեղագիտական եզրահանգումներով անպայման կանգնած էր այն դժվար ու պատվավոր ճանապարհի վրա, որի մեծագույն սկզբնավորողներից մեկը եղել է Նալբանդյանը» (էջ 69)։ Հ. Թամրազյանը չի սխալվում, երբ Շիրվանզադեին դիտում է որպես մի գրողի, որի հայեցակետով՝ «Գրականությունը կոչված է պայքար մղելու կյանքի խավարի, հարստահարության ու հարստահարիչների, բուրժուազիայի դեմ» (էջ 67)։*

*Այսպիսով, իրականում գրականության շիրվանզադեական անպարտիականության ըմբռնումը հերքվում է բուն իսկ նրա հարուստ ստեղծագործությամբ։ Մեծ վիպասանին, հատկապես սովետական կարգերում ապրած տարիները լիովին համոզեցին, որ իրոք արվեստն ու գրականությունը եղել են ու կմնան իբրև պարտիական գործ։ Մեզ մնում է միայն ցավել, որ Շիրվանզադեի պես խոշոր գրողի երկերը հրամցնում են ընթերցողներին առանց գիտական ապարատի։*

*Կարելի էր չխոսել այս մասին, եթե դա բացառություն լիներ։ Բայց, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, Մ. Աբեղյանի անվան հայ գրականության պատմության ինստիտուտը հրատարակում է առանց կոմենտարների և քննադատական վերաբերմունքի նաև այլ գրողների գործեր։ Այսպես, օրինակ, Հ. Թումանյանի վեցերորդ հատորում (էջ 240—248) կարդում ենք, թե ինքը չի կարող պատկանել որևէ կուսակցության, որովհետև պոետը հատուկ մարդ է, որն իր սավառնուն և ինքնիշխան ոգով բարձր է կանգնած ամեն մի պարտիայից. ամեն մի գրող իրենից մի առանձին կուսակցություն է։*

*Հեղինակությունը, և այն էլ պատմությամբ հաստատված հեղինակությունը խոշոր ազդեցություն ունի մարդկանց մտքերի վրա։ Թումանյանին սիրում և մեծարում են ոչ միայն հայ ժողովուրդը, այլև մեր հարևան ժողովուրդները։ Այս հանգամանքը մեզ պարտավորեցնում է խաղ չանել պատմական մեծությունների հեղինակության հետ, և նրանց գրական տնտեսությունը վարել այն եղանակով, որպեսզի ընթերցողները ճիշտ ըմբռնեն նրա աշխարհայացքի և ստեղծագործության միջև տեղ գտած ժամանակի հակասությունները։*

*Հիրավի, ով չգիտե, որ մեծ Լոռեցին իր բոլոր գործերում եղել է հասարակական արդարության և բարձր բարոյականության անձնուրաց ջատագովը։ Բայց վերոհիշյալ էջում կարդում ենք, թե գրողների «...պաշտամունքի առարկան գեղեցիկն է» և* ոչ թե *բարոյականությունը կամ* «ազատ ու արդար հասարակարգը»։ *Այս ամենն, իհարկե, հերքվում է նախ և առաջ Հ. Թումանյանի ստեղծագործության շեշտված ժողովրդական բարոյականությամբ և արդարատենչությամբ, որի մասին խմբագիրները պարտավոր էին ասելու իրենց հեղինակավոր խոսքը։*

*Ո՞ւմ հայտնի չէ, որ Լոռեցի Հոմերն իր բոլոր գործերում խոր հարգանք է տածել հայ կնոջ նկատմամբ։ Բայց ահա նրա նշված հատորում*



*կարդում ենք հայ կնոջ հասցեին. «Մի՞թե կարող է այդ կինը — հայ կինը ոգևորել մարդու։ Ծածկամիտ, հաշվող, խելոք (իբր թե), պոլիտիկոս, դրան ավելացրու անճաշակությունը...*

*Ոչինչ, ոչինչ նրան չի թողնում, նույնիսկ սերը, այդ կախարդական [դեր] չի կարող թափանցել ու լուսավորել, պարզել, թե ինչ կա հայ կնոջ սրտում և չի կարող նրան թողնել հաշիվների ցանկից դենը» (էջ 86—87)։*

*Պոետի շուրթերից զայրույթի կամ հիասթափության պահին ասված այս դառնաղի, էպիզոդիկ և նրա բանաստեղծական մեծ հոգուն խորթ այդ խոսքերը ի՞նչ օգուտ կարող են բերել մեր օրերի երիտասարդությանը։ Կարիք կա՞, որպեսզի մենք ամենին ի ցույց դնենք նման բաները կամ հրապարակային թամաշաներ կազմակերպենք մեծ գրողների անձնական կյանքի ստվերոտ կողմերի ցուցադրությամբ։ Այդպես անխոհեմ չպետք է վարվել։*

*Պատահում է և այնպես, որ որևէ կլասիկի ասածը խստորեն հակասում է մեր օրերի գրականագետների ըմբռնմանը։ Այսպես, օրինակ, վերջերս լույս տեսած Հ. Ոշտունու* Դանիել Վարուժան *մենագրության մեջ, բանաստեղծի «Ով Լալագե» երկը իրավամբ բարձր է գնահատվում։ Մինչդեռ ժամանակին Շիրվանզադեն այդ ոտանավորը որակել է որպես «զազրելի», «կեղտոտ», իսկ հեղինակի հասցեին ասել է մի քանի դառն խոսքեր։ «Դա արդեն պոռնկագրություն չէ, այլ կատարյալ պոռնկություն։ Եվ ահա Դանիել Վարուժանի պես էրոտոմանները մեզ իրենց պոռնկության նմուշները ծախում են բանաստեղծության տեղ և «Գեղարվեստի» նման մի հանդես այդ նմուշները օրը ցերեկով թավալգա է անում մեզ» (հ. 10, էջ 476)։ Մեծ վիպասանի այս մոլորությունը եթե թողնենք առանց մեկնաբանությունների, ավելի խոր մոլորությունների աղբյուր կդառնա։*

*Այսպիսով, վճռականապես պետք է մերժել այն «ողորկ» ճանապարհը, որով մերթ հրապուրվում են հայ կլասիկների երկերը հրապարակող ինստիտուտները և հրատարակչությունները։ Այդ ճանապարհը վտանգավոր է։ Այդ մեթոդով տպագրված գործերը մեծապես խոչընդոտում են նոր մարդու դաստիարակության գործին։ Մի բան, որը չեն հասկացել գրական մամուլի մի շարք գործիչներ։*

*ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը պահանջեց գաղափարական աշխատողներից ուժեղացնել և սիստեմատիկ դարձնել խորթ հայացքների դեմ մղվող պայքարը։ Իսկ այդ հայացքները թափանցում են մեր իրականության մեջ տարբեր ճանապարհներով, տարբեր կեռմաններով։ Անցյալի գրական ժառանգության ակունքներից ճիշտ օգտվելը մեծապես կնպաստի սովետական գրականության և արվեստի առաջխաղացման գործին։*

*Արվեստի և գրականության պարտիականության հարցը նախ և առաջ աշխարհայեցողության և քաղաքականության հարց է։ Մի հարց, որը բացառում է որևէ կոմպրոմիս բուրժուական հետադիմական հայացքներին։*

*Ռեսպուբլիկայի գիտական-գրական հաստատությունները և հրատարակչությունները պարտավոր են պատշաճ կարգ ու կանոն սահմանել գրական ժառանգության հրատարակման գործում, թույլ չտալով, որպեսզի պատահականությունները որևէ չափով ազդեն այդ գործի ընթացքի վրա։ Պետք է կանխել բոլոր այն մարդկանց միջամտությունները, որոնք նյութական կամ սնափառության մարմաջով տարված, ձգտում են այն բանին, որպեսզի լույս աշխարհ բերվի այն ամենը, ինչ «պատկանում է» տվյալ կլասիկի գրչին։*

*Անցյալի ժառանգության արժեքների գնահատման ու վերագնահատման գործը ոչ միայն շեշտված պարտիական է, այլև վերին աստիճանի բարդ է ու դժվարին։ Այստեղ անփորձ և մարքսիստական աշխարհայացքից զուրկ մարդուն սպասում են գայթակղության և մոլորությունների շատ կածաններ։ Չպետք է մոռացության տալ լենինյան այն ճշմարիտ սկզբունքը, թե անցյալի կուլտուրայից մենք վերցնում ենք* միմիայն *նրա դեմոկրատական և սոցիալիստական տարրերը։ Ամենափոքր մոռացությունն ու թերացումն այս գործում հղի է բացասական հետևանքներով։*

*Ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկների ու հրատարակչությունների կոլեկտիվները կոչված են հավաքելու, ամենայն խնամքով մշակելու և ժողովրդին վերադարձնելու նրան պատկանող հարուստ ժառանգությունը, դիտելով վերջինս իբրև այն մարտադաշտերից մեկը, ուր շարունակվում է պայքարը մատերիալիզմի ու իդեալիզմի, պրոլետարական և բուրժուական աշխարհըմբռնումների միջև։ Նրանք, ովքեր շեղվում են այս սկզբունքներից, ջուր են լցնում մարքսիզմ-լենինիզմի հակառակորդների աղացին։ Ահա թե ինչու պարտիան պահանջում է մեզնից հարձակողական և անզիջում պայքար վարել բոլոր այն հայացքների դրսևորումների դեմ, որոնք թունավորում են նոր մարդու հոգին մեռնող աշխարհի վարակով։*

*Անցյալի հարուստ ժառանգության լաբիրինթոսում կարելի է հաստատ քայլերով ընթանալ, երբ մեր ուղին լուսավորում է լենինիզմի անմար ջահը։*

---

## Հոդվածներ ու նյութեր

## ԱՐՏԱԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԸ ԵՎ ԴՐԱ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՌԱՑԻՈՆԱԼԱՑՈՒՄԸ

Մարդու յուրաքանչյուր քայլն ու գործողությունը զբաղեցնում են և՛ տարածություն, և՛ ժամանակ։ Նա բավարարում է իր մի շարք կենսական պահանջները, իսկ մյուս կողմից՝ հասարակական անհատը բավարարում է հոգևոր ու կուլտուրական բազմապիսի պահանջմունքներ։ Նա կատարում է իր հասարակական զանազան պարտականությունները, շփվում հասարակության անդամների հետ և այլն։ Այս ամենը անխուսափելիորեն ժամանակ է պահանջում։ Այն ժամանակը, որ մարդը ծախսում է իր բոլոր կարիքները հոգալու համար, սովորաբար չափվում է այնպիսի մեծություններով, ինչպիսիք են՝ ժամը, օրը, շաբաթը, ամիսը, տարին և այլն։ Դրանցից ամենապրակտիկ միավորը՝ օրն է։ Աշխատավորների ժամանակի օրական բյուջեն բաղկացած է երկու հիմնական մասից՝ աշխատանքային և արտաաշխատանքային ժամանակից։

Արտաաշխատանքային ժամանակը աշխատավորն օգտագործում է իր սեփական հայեցողությամբ, իր բնական-ֆիզիոլոգիական, հոգևոր-կուլտուրական կարիքների, բարոյական պարտականությունների և ֆիզիկական զարգացման պահանջմունքները բավարարելու համար։

Արտաաշխատանքային ժամանակը մենք բաժանում ենք երկու հիմնական մասի։ Առաջին՝ ժամանակի այն ծախսումներն են, որոնք ստեղծում են պայմաններ և ապահովում աշխատուժի պարզ վերարտադրությունը (քնելը, սնվելը, անձնական հիգիենայով, տնային աշխատանքներով զբաղվելը և այլն)։ Արտաաշխատանքային ժամանակի այս մասի ծախսումներն ապահովում են մարդու՝ աշխատաժամանակի ընթացքում ծախսված ուժերի և էներգիայի վերականգնումը, պահպանում նրա առողջությունն ու աշխատունակությունը, ստեղծում հնարավորություն՝ խնամելու իրեն փոխարինող նոր աշխատուժին։

Երկրորդ մասը արտաաշխատանքային ժամանակի այն ծախսումներն են, որոնք ստեղծում են պայմաններ աշխատուժի ընդլայնված վերարտադրության համար (ուսումը, ինքնազարգացմամբ զբաղվելը, հասարակական պարտականությունների կատարումը, երեխաների դաստիարակումը, ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվելը և այլն)։

Արտաաշխատանքային ժամանակի այս մասն ապահովում է մարդու մտավոր ու ֆիզիկական բազմակողմանի զարգացում, մարդու որակական հատկանիշների հարմոնիկ աճ, հոգեկան հարուստ աշխարհի և բարձր մտածելակերպի կազմակերպում։

Այսպիսով արտաաշխատանքային ժամանակը այն ժամանակն է, որն ստեղծում և ապահովում է պայմաններ աշխատավորների աշխատուժի ինչպես պարզ, այնպես էլ ընդլայնված վերարտադրության համար։

Մարքսը նշել է, որ ազատ ժամանակը այն է, որը հատկացվում է «...անհատի լիակատար զարգացման համար...», այն ծախսվում է ոչ միայն ժամանցի, այլև ավելի «վսեմ գործունեության համար»։ Մարքսը ընդգծում է, որ այդ այն ժամանակն է, որն օգտագործվում է «...անհատի մտավոր և հասարակական ազատ գործունեության համար...» որի ընթացքում տեղի է ունենում մարդու բազմակողմանի ընդունակությունների հետագա զարգացումը։



Արտաաշխատանքային ժամանակի և նրա ռացիոնալ օգտագործման պրոբլեմը մինչև վերջին ժամանակներս համարյա դուրս էր մնացել մեր սովետական գիտության տեսադաշտից։

Սկսած 1958—1959 թթ. Սովետական Միությունում մի շարք գիտական օջախներ (Մոսկվայում, Նովոսիբիրսկում, Սվերդլովսկում, Կրասնոյարսկում, Կոստրոմայում, Օմսկում և մի շարք այլ տեղերում) նորից վերսկսեցին այդ պրոբլեմով զբաղվել։

1961 թ. հունիս-հուլիս ամիսներին ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտն առաջին անգամ Հայաստանում ձեռնամուխ եղավ այդ պրոբլեմի ուսումնասիրմանը և Երևանի չորս խոշոր (էլեկտրալամպերի, ավտոդողերի, կարի, հրուշակեղենի) գործարաններում ուսումնասիրեց 3363 աշխատավորների օգտագործած ժամանակը (մոտ 10 հազար օրական բյուջեի)։

Ահա այդ ուսումնասիրության արդյունքը.

| | Տղամարդիկ | | Կանայք | | Միջին մեկ մարդուն 1 աշխատանք. օրվա համար | |
|---|---|---|---|---|---|---|
| | ժամանակը (ժ. ր.) | տեսակարար կշիռը % | ժամանակը (ժ. ր.) | տեսակարար կշիռը | ժամանակը (ժ. ր.) | տեսակարար կշիռը |
| I Աշխատուժի պարզ վերարտադր. համար անհրաժեշտ ժամանակը | 12 - 04 | 71,7 | 14 09 | 83,7 | 13—18 | 78.8 |
| Այդ թվում | | | | | | |
| 1) Աշխատանքի վայրը գնալ վերադառնալը և այնտեղ գտնվելը աշխատանքից առաջ և հետո | 1—20 | 7.9 | 1—41 | 10,0 | 1—24 | 8,4 |
| 2) Տնային աշխատանքը և ինքնասպասարկումը | 2 - 16 | 13 5 | 4 - 34 | 27,0 | 3—49 | 22,6 |
| 3) Քնելը և սնվելը | 8—28 | 50,3 | 7—54 | 46,7 | 8 - 05 | 47,8 |
| II Աշխատուժի ընդլայն. վերարտադրության համար անհրաժեշտ ժամանակը (ազատ ժամանակ) | 4—10 | 24,7 | 2 - 24 | 14,2 | 3—12 | 19,0 |
| III Ժամանակի այլ ծախսում | 0 - 36 | 3,6 | 0 21 | 2,1 | 0 - 22 | 2,2 |
| Ընդամենը | 16—50 | 100,0 | 16—54 | 100,0 | 16—52 | 100,0 |

Մեր ուսումնասիրությունները ցույց տվին, որ աշխատավորների արտաաշխատանքային ժամանակի բյուջեում ազատ ժամանակը գրավում է ընդամենը 19 տոկոս (ընդ որում կանանց մոտ երկու անգամ պակաս, քան տղամարդկանց), մինչդեռ տնային աշխատանքը և ինքնասպասարկումը կազմում են ավելի քան 22,6 տոկոս (ընդ որում կանանց մոտ երկու անգամ ավելի)։ Անհամեմատ մեծ են նաև ժամանակի այն ծախսումները, որոնք կատարվում են աշխատավայրը գնալու, վերադառնալու և այնտեղ աշխատանքից առաջ ու հետո գտնվելու համար՝ մոտ 8,4 տոկոս, որը համարյա թե հավասար է ազատ ժամանակի կեսին։

Եթե վերցնենք միմիայն տնային աշխատանքը և աշխատավայր գնալ վերադառնալն ու այնտեղ աշխատանքից առաջ ու հետո գտնվելը, ապա այս երկուսը միասին մոտ երկու անգամ ավելի են ազատ ժամանակի մեծությունից։

Տնային աշխատանքի ինքնասպասարկման, ինչպես նաև աշխատավայր գնալ-վերադառնալու և այնտեղ աշխատանքից առաջ ու հետո գտնվելու վրա կատարվող ժամանակի ծախսերը դեռևս կրում են ոչ ռացիոնալ բնույթ։ Այսպես մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 1000 աշխատող միմիայն տնային աշխատանքի և ինքնասպասարկման վրա մեկ ամսում ծախսում է միջին հաշվով այնքան ժամանակ, որը հավասար է 1635 աշխատանքային օրվա, իսկ աշխատավայր գնալ վերադառնալու և այնտեղ աշխատանքից առաջ և հետո գտնվելու համար կորցրածը հավասար է 600 աշխատանքային օր կազմող ժամանակի։ Եթե այս երկու տիպի ժամանակի ծախսումները կրճատվեն թեկուզ և 50 տոկոսով (իսկ այդ, անշուշտ, հնարավոր է), ապա մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 100 հազար աշխատողներ կխնայեն մոտ 112 հազար 7-ժամյա աշխատանքային օրվա հավասար ժամանակ։

Խիստ ցավալի է, որ մեր հասարակությունը մինչև օրս անտեսում է այս վիթխարի ժամանակը, որը կորցնում են մեր աշխատավորներն այդպիսի անարդյունավետ նպատակներով, չստանալով դրա փոխարեն ոչ մի շոշափելի արդյունք ո՛չ իրենց և ո՛չ էլ հասարակության համար։ Չէ՞ որ այդ հսկայական ժամանակը կարելի կլինի հատկացնել զանազան ստեղծագործական զբաղմունքների՝ գիտությանը, արվեստին, գյուտարարությանը, ուսմանը, հասարակական աշխատանքին, երեխաների դաստիարակությանը, սպորտին...

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորների աշխատանքային ժամանակի օգտագործման ոչ ռացիոնալ մասի կրճատման և ազատ ժամանակը բացարձակ մեծացնելու երկու հիմնական ճանապարհ կա։ Մեկը աշխատանքային ժամանակի սիստեմատիկ կրճատումն է (որը և մեր պետության կողմից անշեղորեն կատարվում է), մյուսը՝ արտաաշխատանքային ժամանակի մյուս բաղկացուցիչ մասերի կրճատումը։ Անշուշտ կրճատումը չի կարող լինել քնելու և անմիջականորեն սնվելու ժամանակի հաշվին. ուրեմն, այդ պետք է լինի հիմնականում այն ժամանակի հաշվին, որը ծախսվում է տնային աշխատանքի և ինքնասպասարկման, ինչպես նաև աշխատավայրը գնալ-վերադառնալու, այնտեղ աշխատանքից առաջ և հետո գտնվելու վրա։

Աշխատավորները շատ ժամանակ են կորցնում, հատկապես, աշխատավայրը գնալ—վերադառնալու վրա, որի հիմնական պատճառը քաղաքային տրանսպորտի անբավարար աշխատանքն է։ Այսպես, օրինակ, Երևանում քաղաքային տրամվայի մեկ ժամվա միջին արագությունը չի անցնում 12—15, տրոլեյբուսինը՝ 13—16, ավտոբուսինը՝ 18—20 կիլոմետրից, սահմանված 30 կիլոմետրի փոխարեն։ Տրանսպորտի կանգառները շատ անհամաչափ են, վագոնավարները հաճախ անհարկի սպասում են ուղևորներ «հավաքելու», կամ կանգնում են՝ ուղևորների ցանկությամբ։ Միջին հաշվով տեխնիկական պատճառներով հերթական ռեյսի դուրս չեն գալիս օրական 11 տրամվայ, 6—7 տրոլեյբուս, 45—50 ավտոբուս։ Միայն 1962 թ. հուլիս ամսվա առաջին տասնօրյակում տեխնիկական անսարքության պատճառով ռեյսից պարկ են վերադարձել 173 և փակուղի դրվել 154 տրամվայ։ № 4 ավտոբուսային պարկում ավտոբուսների մոտ 76 տոկոսն էր հերթուղի դուրս եկել։

Շատ հաճախ ընդհատվում էր էլեկտրաէներգիան, իսկ № 1 ենթակայանի 7 ագրեգատներից կանոնավոր էին աշխատում միայն 2-ը. Երքաղսովետի գործկոմի որոշմամբ քաղաքի գործարաններն ու հիմնարկ-ձեռնարկությունները աշխատանքը պետք է սկսեին տարբեր ժամերի, սակայն ձեռնարկություններն ինքնակամ խախտում էին այդ որոշումը, դրանով իսկ ստեղծելով տրանսպորտի ավելորդ ծանրաբեռնվածություն։

Ժամանակի ոչ ռացիոնալ վատնումները մեծ են, հատկապես, աշխատավայրերի և ապրելավայրերի հեռավորության պատճառով։

Մեծ բարդությունների հետ են կապված ներքաղաքային բնակարանային փոխանակումները, իսկ գործարանների կամ ձեռնարկությունների միջև բնակարանային ֆոնդի փոխանակում առհասարակ չի լինում։ Այս ամենի հետևանքով քաղաքային տրանսպորտը կատարում է շատ ավելորդ և հանդիպակաց փոխադրումներ։ Օրինակ՝ Զեյթունի, Նորքի կամ Այգեստանի բնակիչներն աշ-



խատում են Ս. Մ. Կիրովի անվան, ավտոդողերի, կաբելի գործարաններում. իսկ դրանց շրջակայքում ապրողները՝ կանաչում, կաթի կոմբինատում, էլեկտրալամպերի գործարանում և այլուր։

Քաղաքային տրոլեյբուսները և ավտոբուսները շատ քիչ են օգտագործում կցորդների սիստեմը։ Աշխատանքից առաջ և հետո գործարանում գտնվելու պատճառով ժամանակի կրճատման ամենամեծ ռեզերվները, մեր կարծիքով, գործարանային ցնցուղների, բաղնիքների և ճաշարանների աշխատանքի բարելավումն է, հանդերձարանների և գործիքանոցների ինքնասպասարկման անցնելը, պահականոցից մինչև հեռավոր ցեխերը ներգործարանային փոխադրամիջոցներ ստեղծելը, ավելորդ «կարգագրերի», հաշվետվությունների, թռուցիկ խորհրդակցությունների վերացումը և այլն։

Աշխատավորների ազատ ժամանակի ավելացման ամենամեծ ռեզերվը տնային աշխատանքի և ինքնասպասարկման վրա ծախսված ժամանակի կրճատումն է. հենց միայն այդ ժամանակը արտաաշխատանքային ժամանակի մեջ կազմում է ավելի քան 22,6 տոկոսը։ Ժամանակի այս ծախսումների մասին պատկերացում է տալիս հետևյալ աղյուսակը.

### Տնային աշխատանքի և ինքնասպասարկման վրա ծախսված ժամանակը

*(Միջին հաշվով մեկ մարդու համար մեկ աշխատանքային օրվա ընթացքում, 3363 աշխատավորների ժամանակի բյուջեի տվյալներով)*

| | Մեկ մարդու մեկ աշխ. օրվա համար (ժամ-րոպե) | Նույնը յուրաքանչյուր 1000 հոգու համար մեկ ամսվա ընթացքում | |
|---|---|---|---|
| | | ընդամենը ժամերի հաշվով | աշխատանքային օրվա հաշվով |
| Սննդի պատրաստումը | 0—39 | 19500 | 2786 |
| Գնումներ կատարելը | 0—34 | 17000 | 2428 |
| Կահույքի և բնակարանի խնամքը | 0—21 | 10500 | 1500 |
| Հագուստի և սպիտակեղենի խնամքը | 0—36 | 18000 | 2571 |
| Երեխաների խնամքը | 0—38 | 19000 | 2714 |
| Ինքնասպասարկումը (անձն. հիգիենա) | 0—45 | 22500 | 3214 |
| Այլ ծախսումներ | 0—16 | 8000 | 1143 |
| Ընդամենը — | 3—49 | 114500 | 16357 |

Ինչպես ցույց է տալիս այս աղյուսակը, ժամանակի ծախսումների ընդհանուր մակարդակի 50 տոկոսի կրճատման դեպքում ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 100 հազար աշխատավոր կարող է խնայել միջին հաշվով 820 հազար աշխատօրվա հավասար ժամանակ։ Անշուշտ, խոսքը վերաբերում է ոչ թե ժամանակի այս ծախսումների լրիվ վերացմանը (որը հնարավոր չէ) կամ թե դրանց կրճատմանը կենցաղային կարիքների բավարարման հաշվին, այլ միայն այնպիսի կրճատման, որը միանգամայն հնարավոր է աշխատավորների սպասարկման ոլորտում դեռևս գոյություն ունեցող թերությունների վերացմամբ։

Տնային աշխատանքի և ինքնասպասարկման վրա կատարվող ժամանակի ծախսումները կրճատելու երկու հիմնական ճանապարհ կա. առաջինը՝ կենցաղային սպասարկման պրոցեսների հետագա հանրայնացումն է, երկրորդը՝ յուրաքանչյուր ընտանիքում տնային աշխատանքների առավել ռացիոնալացումն ու մեքենայացումը։ Չնայած ռեսպուբլիկայում այդ երկու ուղղությամբ էլ զգա-

լի գործ է կատարված, սակայն, մեր կարծիքով մեծ անելիքներ կան, հատկապես, աշխատավորների կենցաղը սպասարկող և, մասնավորապես, առևտրի, հասարակական սննդի և կոմունալ կենցաղային սպասարկման ձեռնարկությունները քաղաքների տերիտորիայում ճիշտ տեղաբաշխելու, դրանց մասնագիտացման ու խոշորացման, ավելի պրոգրեսիվ ու առաջավոր սպասարկման ձևերի ներդրման բնագավառում: Շատ անելիքներ կան նաև կենցաղային մեքենաների ու սարքավորումների, կոնստրուկցիաների կատարելագործման ու պարզեցման, կենցաղային տեխնիկայի արտադրության հետագա կենտրոնացման ու մասնագիտացման բնագավառում:

Այս և նման հարցերի ավելի օպերատիվ լուծումը հնարավորություն կտա մեծ չափերով կրճատելու տնային աշխատանքի ու ինքնասպասարկման վրա ծախսվող ավելորդ ժամանակը, դրանով իսկ ավելացնելու աշխատավորների ազատ ժամանակը:

Սակայն աշխատանքային ժամանակի ռացիոնալ օգտագործման խնդիրը չի սահմանափակվում ազատ ժամանակի ավելացմամբ: Առավել կարևոր է բուն ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործումը: Եթե այս կամ այն ճանապարհով ավելացած ազատ ժամանակը աշխատավորների կողմից չի օգտագործվում իր մտավոր և ֆիզիկական բազմակողմանի զարգացման, խելացի և օգտավետ հանգստի համար, ապա այդպիսի ազատ ժամանակը կորցնում է իր իմաստը:

Հիրավի, ի՞նչ են տալիս աշխատավորների ֆիզիկական և մտավոր զարգացմանը այնպիսի զբաղմունքներ, ինչպես, ասենք՝ ժամերով թղթախաղով զբաղվելը կամ նարդի խաղալը, խորտկարաններում և ռեստորաններում բաժակաճառեր ասելը և այլն:

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ամբողջ ազատ ժամանակի ամսական ֆոնդի (96 ժամվա) մեծ մասը կազմում են զանազան զվարճալիքներ (46,5 ժամ), իսկ ժամանակի այնպիսի օգտակար ծախսումը, ինչպես՝ ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվելը, ամսվա ընթացքում միջին հաշվով տևում է միայն 3 ժամ: Ինքնադաստիարակությունը, ինքնակրթությունը, ուսումը և որակավորման բարձրացումը միասին վերցրած ամսվա ընթացքում կազմում են ընդամենը 21 ժամ: Շատ քիչ ժամանակ է ծախսվում նաև հասարակական աշխատանքի ու երեխաների դաստիարակության վրա՝ ընդամենը 12 ժամ:

Շատ ժամանակ են խլում, հատկապես, հյուր գնալն ու ընդունելը, սենյակային սեղանի խաղերը, որոնք միասին կլանում են ընդհանուր 46,5 ժամից 17-ժամ, մինչդեռ կինո-թատրոն, համերգ հաճախելը զբաղեցնում է ընդամենը 15,5 ժամ:

Այս տվյալներից երևում է, որ մեր ռեսպուբլիկայի աշխատավորների ազատ ժամանակը դեռևս արդյունավետ չի օգտագործվում:

Աշխատավորների ազատ ժամանակն առավել ռացիոնալ ու բովանդակալից ծախսելու գործը մեր ռեսպուբլիկայում դեռևս չի գտնվում հասարակության ուշադրության կենտրոնում: Շատ թերություններ կան ակումբների, գրադարանների, կուլտուրայի և հանգստի պարկերի, կինոների ու թատրոնների, ֆիզկուլտ կազմակերպությունների և այլ աշխատանքներում, որտեղ պետք է կազմակերպվի աշխատավորության արտաաշխատանքային ժամանակի խելացի անցկացումը: Այսպես, օրինակ, մայրաքաղաքի և ոչ մի կինո-թատրոն, բացի կինոցուցադրումից, իրենց ընդարձակ ֆոյեները, դահլիճները չեն օգտագործում ինքնագործունեության համերգներ, դասախոսություններ, նշանավոր մարդկանց հետ հանդիպումներ և այդ կարգի այլ միջոցառումներ կազմակերպելու համար, չեն ստեղծում շրջիկ կինոցուցադրումներ՝ բակերում, գործարանային ցեխերում, չունեն երեխաների խաղի ու խնամքի սենյակ: Ռեսպուբլիկայում չկան ամուրիների, տնային տնտեսուհիների ակումբներ, բակային երիտասարդական ակումբ-կաֆեներ, ազգային խաղերի ակումբներ և այլն:

Գոյություն ունեցող ակումբներն ու կուլտուրայի տները գերադասելով վճարովի միջոցառումները, աշխատավորների կոլեկտիվ հանգիստը պատշաճ ձևով չեն կազմակերպում (թեմատիկ, հետաքրքրական ժամանցի երեկոներ,



ընտանեկան հանդեսներ «ոսկյա» կամ «արծաթյա» հարսանիքներ, երեկոներ՝ նվիրված թոշակի անցնողներին, անձնագիր ստացողներին, հայրենադարձներին և այլն): Նրանք իրենց միջոցների գրաֆիկները չեն հարմարեցնում գործարանների աշխատանքի հերթափոխություններին: Թանգարանները շատ քիչ են կազմակերպում շրջիկ ցուցահանդեսներ՝ անմիջականորեն գործարանային ցեխերում, հանրակացարաններում, մեծ բակերում: Գրադարանները չեն կիրառում սպասարկման այնպիսի պրոգրեսիվ ձևեր, ինչպիսիք են՝ բնակարանային-շրջիկ ընթերցարանները, գրքերով պարգևատրելու խրախուսական սիստեմը և այլն: Հանգստի և կուլտուրայի զբոսայգիներն անբավարար են կազմակերպում աշխատավորների կոլեկտիվ հանգստի մասսայական միջոցառումներ, ազգային խաղեր ու հանդեսներ: Դեռևս սպորտը ինչպես հարկն է չի տարածված ժողովրդական լայն մասսաների շրջանում, թույլ են արմատավորված առողջ սերունդ աճեցնելու այնպիսի ձև, ինչպիսին թեթև ատլետիկան է, ջրային ձմեռային սպորտը, գեղարվեստական գիմնաստիկան, ալպինիզմը, տուրիզմը և այլն: Ֆիզկուլտ և սպորտ աշխատանքներն ըստ խոշոր ձեռնարկությունների կազմակերպելու հետևանքով չեն ընդգրկվել տնային կառավարչությունները, բնակմասսիվները, միկրոշրջանները, առանձին բակերը, ինչպես նաև՝ փոքր հիմնարկները, գրասենյակները, արտելները, ձեռնարկությունները, տնային տնտեսուհիները, թոշակառուները և ուրիշներ:

Մեր պարտիան խոշորագույն միջոցների կիրառմամբ ձգտում է աստիճանաբար կրճատել աշխատանքային ժամանակը և ավելացնել արտաաշխատանքայինը: Նախատեսված է առաջիկա տասը տարվա ընթացքում իրագործել անցումը վեցժամյա աշխատանճային օրվա, շաբաթը մեկ հանգստյան օրով, կամ 35 ժամյա աշխատանճային շաբաթի՝ երկու հանգստյան օրով: Հենց միայն 6—7 ժամյա աշխատանքային օրվա կիրառմամբ յուրաքանչյուր աշխատավորի տարեկան արտաաշխատանքային ժամանակն ավելացել է մոտ 50 աշխատանքային օրվա չափով: Հեռու չէ այն ժամանակը, երբ աշխատանքային օրը 4—5 ժամից ավելի չի լինի:

Նյութական արտադրության համար հատկացված ժամանակի կրճատման հետ մեկտեղ, ասված է պարտիայի ծրագրում, ընդլայնվում են արտադրության, գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառում ընդունակությունները, ձիրքերն ու տաղանդները զարգացնելու հնարավորությունները: Մարդկանց ազատ ժամանակը գնալով ավելի մեծ չափով կնվիրվի հասարակական գործունեությանը, կուլտուրական շփմանը, մտավոր ու ֆիզիկական զարգացմանը:

Ժամանակի ռացիոնալ օգտագործումը, հատկապես, կոմունիստական ծավալուն շինարարության ներկա էտապում ժողովրդա-տնտեսական և համապետական մեծ նշանակություն ունի: Այժմվանից իսկ աշխատավորները պետք է ամեն ինչ անեն ժամանակն արդյունավետ, արտաաշխատանքային ժամանակն ավելի ռացիոնալ օգտագործելու համար: Ժամանակը սոցիալիզմի պայմաններում անհամեմատ թանկ է ոսկուց. դրա ոչ ռացիոնալ օգտագործումը կամ վատնումը մեծ կորուստ է:

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու



# ՍՊՈՐՏԸ ՄԱՍՍԱՆԵՐԻՆ

> Ֆիզկուլտուրան և սպորտը ճաստատուն
> կերպով կմտնեն մարդկանց առօրյա կենցա-
> ղի մեջ:
>
> (ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ)

Սովետական ժողովուրդը պատմության մեջ իր նմանը չունեցող, ամենա-
մարդասիրական հասարակարգ է ստեղծում: Կոմունիզմի կառուցումը մեծ ջան-
քեր է պահանջում հասարակությունից և, առաջին հերթին՝ առողջ, ուժեղ, կոփ-
ված ու բազմակողմանիորեն զարգացած մարդիկ: Այդպիսի հատկություններ
է մարդկանց մեջ դաստիարակում սպորտը, հատկապես երիտասարդության,
պատանեկության մոտ: Սովետական սպորտը մարդուն դարձնում է իսկական
կոլեկտիվիստ (հատկապես խմբակային խաղերի միջոցով), ուրիշին հարգող,
պարտաճանաչ, պատասխանատու:

Սպորտն անհրաժեշտ է ոչ միայն պատանիներին ու երիտասարդներին,
այլև մեծահասակներին իրենց առողջությունն ու աշխատանքային ունակու-
թյունները հարատևելու համար: Այն ինքնանպատակ չէ և պարունակում է
մարդու հոգևոր կերպարը գեղեցկացնող տարրեր: Իսկ մասսայական սպորտը
բոլորովին էլ միջակության բազմացում չի նշանակում:

Ֆիզկուլտուրայի և սպորտի մեծ նշանակությունն ակնհայտ է նաև երկրի
պաշտպանունակության ամրապնդման տեսակետից: Այդ առումով էլ հենց
ստեղծվել են Պատրաստ աշխատանքի և պաշտպանության՝ ՊԱՊ և Եղիր պատ-
րաստ աշխատանքի և պաշտպանության՝ ԵՊԱՊ (պատանեկան) կրծքանշանները
և նրանց նորմաների հանձնումը: Հայրենական մեծ պատերազմի օրերին հա-
զարավոր ՊԱՊ կրծքանշանակիրներ պատվով կատարեցին իրենց սրբազան
պարտքը հայրենիքի նկատմամբ և դրան մեծապես օգնեց սպորտը, այն, որ
նրանք տարիների ընթացքում մարզվել էին, դարձել ուժեղ, տոկուն, համար-
ձակ, պարտաճանաչ:

Ֆիզկուլտուրան ու սպորտը մշակում, հղկում են մարդու հոգին. երաժշ-
տության, գրականության, ընդհանրապես արվեստի նման բարձրացնում, գե-
ղեցկացնում են նրա ճաշակը, զարգացնում հակումները: Սպորտով զբաղվող
սովետական մարդու մոտ ծնվում են բարձր մարդասիրական հատկանիշներ,
նա դառնում է ընկերասեր: Ֆիզկուլտուրան ու սպորտը օգնում են մարդուն փո-
խել իր բնավորությունը, մերժել բուրժուական հասարակությունից մնացած
եսասիրությունը, անձնական շահի ձգտումը: Այն մեծ կոլեկտիվիզմի զարգաց-
մանը, որով օժտված է սովետական մարդը, մեծապես նպաստում է և սպորտը:
Ու պատահական չէ, որ այն կուլտուրա է անվանվում. Ֆիզկուլտուրան՝ սպորտը
ամենալայն, ամենամասսայական կուլտուրաներից մեկն է՝ սիրված ժողովր-
դի, բոլոր տարիքի ու սեռի մարդկանց կողմից:

## 1

Մեր երկրում հսկայական նշանակություն է տրվում աշխատավորության
ֆիզիկական դաստիարակությանը: Սովետական պետությունն ամեն տարի
տասնյակ միլիոնավոր ռուբլիներ է հատկացնում ֆիզիկական կուլտուրայի և
սպորտի հետագա զարգացմանը: «Պարտիան կարևորագույն խնդիրներից մեկն



է համարում,—ասված է ՍՄԿՊ Ծրագրում,—սկսած մանկական վաղ հասա-
կից, ապահովել ֆիզիկապես ամուր երիտասարդ սերնդի դաստիարակությու-
նը՝ նրա ֆիզիկական և հոգևոր ուժերի ներդաշնակ զարգացմամբ հանդերձ:
Դա պահանջում է բստ ամենայնի խրախուսել մասսայական սպորտի և ֆիզի-
կական կուլտուրայի բոլոր ձևերը, այդ թվում դպրոցներում, ֆիզկուլտ շարժ-
ման մեջ ներգրավել բնակչության ավելի ու ավելի լայն խավեր, հատկապես
երիտասարդներին»:

Այդ կարևոր խնդրի իրականացման նպատակով մեզ մոտ տարեցտարի
ստեղծվում են սպորտային ամենատարբեր բազաներ՝ ստադիոններ ու խաղա-
հրապարակներ, սպորտի պալատներ ու դահլիճներ, լողավազաններ ու հրաձգա-
րաններ, թենիսի կորտեր ու հեծանվային տրեկներ, թողարկվում են ամեն տե-
սակի սպորտային կայք ու գործիքներ: Այդ բոլորից միլիոններն են օգտվում.
պարապում են, մարզվում՝ իրենց առողջությունն ու կեցվածքը լավ պահպա-
նելու ձգտումով, կատարելագործվում, խորանում սիրած ձևի վարպետության
գաղտնիքների մեջ՝ սպորտային փառքի բարձունքներին հասնելու համար:

Սովետական Միությունում այսօր սպորտով զբաղվում է մի քանի տասն-
յակ միլիոն մարդ. այդ մասսայականությունն էլ հենց տվել ու տալիս է իր
հրաշալի պտուղները: Մեր հայրենիքի ամենամարզված, ուժեղ, կոփված քա-
ղաքացիներից շատերը սպորտի բազմազան ձևերում դարձել են աշխարհի
օլիմպիական խաղերի չեմպիոններ, ռեկորդսմեններ. ուժեղագույնի դափնե-
պսակների ու հաղթողների պատվավոր տիտղոսի են արժանացել սովետական
սպորտի շատ առաջամարտիկներ:

Ամբողջ աշխարհն է ճանաչում այդ մարտիկներին՝ Վլադիմիր Կուցին ու
Նինա Դամբաձեին, Վիկտոր Չուկարինին ու Մարիա Իսակովային, Միխայիլ
Բոտվիննիկին և Իսահակ Կուպերմանին, Վալերի Բրումելին և Իգոր Տեր-Հով-
հաննիսյանին, Յուրի Վլասովին ու Լարիսա Լատինինային, Տիգրան Պետրոս-
յանին ու Նինա Գափրինդաշվիլուն, Յան Կրումինշին և Ալգիդրաս Շոցիկասին
և շատ այլոց, ովքեր ներկայացնելով սովետների երկիրը, սպորտի տարբեր
ասպարեզներում նվաճել են միլիոնավոր սպորտասերների անհուն սերն ու
համակրանքը:

Սպորտը միաժամանակ մարդկանց, ժողովուրդների, ազգերի ու երկրների
փոխհարաբերությունների նորմալացման, նրանց մեջ բարեկամություն ու
հարգանք ծնող միջոցառում է:

Աշխարհում առաջին սպորտային տերության՝ սովետների երկրի հաջողու-
թյունները վերջին տարիներին աննախընթաց են: XV և XVI օլիմպիական խա-
ղերի բացարձակ հաղթանակները, ժամանակակից հնգամարտի գծով, թիմա-
յին ու անհատական հնգակի հաղթությունն աշխարհում, մարմնամարզության,
ըմբշամարտի, վոլեյբոլի և բասկետբոլի աշխարհի չեմպիոնների կոչման նվա-
ճումը, բռնցքամարտի, ֆուտբոլի և սպորտի մի շարք այլ ձևերում Եվրոպայի
չեմպիոնի տիտղոսի նվաճումը վկայում են մեր երկրի սպորտային կազմա-
կերպությունների, կոլեկտիվների ու անհատ մարզիկների տեխնիկական բարձր
մակարդակի մասին, մեկ անգամ ևս հաստատում են սոցիալիստական հասա-
րակության մեծ առավելությունները կապիտալիստականի նկատմամբ, դրսե-
վորում մեր մարդկանց ֆիզիկական և բարոյա-կամային բարձր հատկանիշ-
ները:

## 2

Սովետական սպորտի պատմության փառավոր տարեգրության մեջ իր
ոսկե էջերն ունի նաև Սովետական Հայաստանի ֆիզկուլտուրայի և սպորտի
կազմակերպությունը: Տարիները հաջորդել են իրար, սերունդները փոխարինել
մեկը մյուսին, բայց միշտ էլ համամիութենական սպորտային երկնակամա-
րում, իրենց վարպետությամբ ու փայլուն հաջողություններով աչքի են ընկել
մեր ռեսպուբլիկայում աճած ու առնացած մարզիկները: Աշխարհի ամենատար-
բեր երկրների ստադիոններում ու դահլիճներում հանդես են եկել մեր ռես-

# ՀՈՂԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՊՏՈՒՂՆԵՐԸ

Անցյալում Նորաշենի գյուղատնտեսական արտելը շրջանի տնտեսապես թույլ կոլտնտեսություններից մեկն էր։ Դրա հիմնական պատճառը հողի անարդյունավետ օգտագործումն էր։ Այսպես, վարելահողի 40 տոկոսն զբաղեցվում էր բազմամյա խոտաբույսերով ու մաքուր ցելով, իսկ 10 տոկոսը՝ շարահերկ կուլտուրաներով (կարտոֆիլ և կերի ճակնդեղ)։ Ցածր էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։

Վերանայելով կոլտնտեսության ցանքատարածությունների կառուցվածքը՝ վարչությունը որոշեց 21 հեկտար տարածության վրա եգիպտացորեն ցանել։ Եգիպտացորենի մշակության նախաձեռնությունը վերցրին կոլտնտեսության երիտասարդներն ու մեխանիզատորները։ Կազմակերպվեցին բարձր բերքի օղակներ, որոնք պարտավորվեցին գյուղատնտեսական մյուս կուլտուրաների հետ զուգընթաց երեքական հեկտար եգիպտացորեն մշակել։

Բարձր բերքի օղակները, հետևելով գիտությանը և երկրի առաջավոր տնտեսությունների փորձին, եգիպտացորենի մշակության գործում հետևողականորեն կիրառեցին ագրոտեխնիկական միջոցառումներ և առաջին տարին ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացան 48 ցենտներ չոր հատիկ և 246,2 ցենտներ կանաչ զանգված։ Կոլտնտեսությունը եգիպտացորենի կանաչ զանգվածի և կողրերի խառնուրդից պատրաստեց 517 տոննա սիլոս։ Այսպիսով, կերի բալանսում հաստատուն տեղ գրավեցին եգիպտացորենի սիլոսն ու հատիկը, որոնք վճռական դեր խաղացին անասնաբուծության մթերատվության բարձրացման գործում։ Բավական է ասել, որ մեկ տարում կաթնաապրանքային ֆերմայի առաջին և երկրորդ բրիգադներում կրկնապատկվեց կաթի արտադրությունը, իսկ ֆերմայում յուրաքանչյուր կովից, նախորդ տարվա համեմատությամբ, 184 կիլոգրամով ավելի կաթ ստացվեց։

Ելնելով հողային պայմաններից և ռելիեֆից կոլտնտեսությունն սկսեց կիրառել երկու տիպի ցանքաշրջանառություն։ Հարթ և լեռնային միջին ռելիեֆ ունեցող տարածություններում, որտեղ հողերն ունեն վարելաշերտի միջին հզորություն, կիրառվում է շարահերկ սիստեմը։ Թեք լեռնալանջերում, որոնք ծածկված են վարելաշերտի սակավ հզորություն ունեցող հողերով, կիրառվում է ցանքաշրջանառության մի այլ սիստեմ։ Այդ հողերը էռոզիայից պաշտպանելու համար կատարվում է բազմամյա խոտերի՝ կորնգանի ցանք, երկամյա օգտագործումով։ Նշված սիստեմում աշնանացան ցորենն զբաղեցնում է վարելահողի 40 տոկոսը։ Ցանքատարածության մեկ դաշտը (20 տոկոս) զբաղեցվում է շարահերկ կուլտուրայով, հողերի հյուսիսային կողմնադրության պայմաններում՝ կարտոֆիլով, իսկ հարավային կողմնադրության դեպքում՝ ծխախոտով։ Շարահերկ կուլտուրաների նախորդն է աշնանացան ցորենը։ Շարահերկ սիստեմի դեպքում ցանքատարածության 50 տոկոսը զբաղեցվում է շարահերկ կուլտուրաներով, որից 21,2 տոկոսը՝ եգիպտացորենով։ Եգիպտացորենի նախորդ են համարվում հացահատիկային կուլտուրաները։ 1960 թ. կոլտնտեսությունը 80 տոկոսով պակասեցրել է բազմամյա խոտաբույսերի ցանքը (որի տեսակարար կշիռը մինչև 1960 թ. կազմում էր բոլոր ցանքերի 20 տոկոսը), դրա փոխարեն ցանում է եգիպտացորեն։ Եթե ամբողջ Շամշադինի շրջանում բազմամյա խոտաբույսերը կազմում են



ցանքատարածությունների 22 տոկոսը, ապա Նորաշենում՝ 11։ Այստեղ ցանքատարածություններից վերջնականապես դուրս է մղվել մաքուր ցելը։

Հանրային տնտեսությունում ագրոտեխնիկական կոմպլեքս միջոցառումների, արտադրության մեջ գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման շնորհիվ տարեցտարի բարձրանում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ 1960—62 թվականների տվյալներով կոլտնտեսությունում հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 24,0, ծխախոտինը՝ 25,1, բանջարեղենինը՝ 480, կարտոֆիլինը՝ 142,2 ցենտներ։ Կոլտնտեսությունն առավել լուրջ հաջողությունների հասավ շարահերկ կուլտուրաների մշակության բնագավառում։ Եթե 1960 թվականին եգիպտացորենի 26 հեկտար ցանքի յուրաքանչյուր հեկտարից բերքատվությունը կազմել է 67,1 ցենտներ, ապա 1961 թվականին (երաշտի պայմաններում) նույն տարածությունից ստացվել է 74,3, իսկ 1962 թվականին 28 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 94,8 ցենտներ հատիկ. ցողունների հետ միասին յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 14.699 կերային միավոր։ Բացի այդ, վերջին տարում 56 հեկտար եգիպտացորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից (կաթնամոմային հասունության շրջանում) ստացվել է 7600 կերային միավոր։ Կոլտնտեսությունն առաջին անգամ մշակելով շաքարի ճակնդեղ, յուրաքանչյուր հեկտարից ստացել է 380 ցենտներ բերք։ Բարձր բերք է ստացվել նաև ընդեղանահատիկային կուլտուրաների ցանքից։ Այսպիսով, ամբողջ եգիպտացորենի և շաքարի ճակնդեղի ցանքից (90 հեկտար) կոլտնտեսությունը ստացել է 900,8 հազար կերային միավոր. մինչդեռ, եթե այդ նույն տարածության վրա մշակվեին բազմամյա խոտեր, կստացվեր 158,8 հազար կերային միավոր, կամ մոտ 6 անգամ պակաս եգիպտացորենի բերքից։

Նորաշենցիները սեփական փորձով համոզվել են նաև, որ շարահերկ կուլտուրաներ մշակելիս, զգալի չափով քիչ աշխատանքային ու նյութական միջոցներ ծախսելով հանդերձ, բավականին բարձր արդյունք է ստացվում։ Վերջին երեք տարվա տվյալներով բազմամյա խոտաբույսերի մշակության վրա ծախսված մեկ աշխօրի դիմաց ստացվել է 59,2, եգիպտացորենինը՝ 222,1, իսկ շաքարի ճակնդեղինը՝ (միայն 1962 թ. տվյալներով) 140,8 կերային միավոր։ Շարահերկ կուլտուրաներից հատկապես եգիպտացորենը և շաքարի ճակնդեղը թե՛ բերքատվությամբ, թե՛ կերի միավորներով և թե՛ պահանջած աշխատանքային նվազագույն ծախսումներով ամենաարժեքավոր կուլտուրաներից են։

Գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվությունն արդյունք է հողի առավել արդյունավետ օգտագործման նպատակով կոլտնտեսության կիրառած մի շարք միջոցառումների։ Այդ միջոցառումների առաջին խմբի մեջ են մտնում կոլտնտեսությունում կիրառվող երկու տիպի ցանքաշրջանառությունը և, միաժամանակ, այն կոմպլեքս ագրոմիջոցառումները, որոնք հնարավորություն են տալիս մշակվող կուլտուրաների համար ստեղծել առավել նպաստավոր արտաքին միջավայր։ Երկրորդ խմբի մեջ են մտնում բույսերի բնույթի փոխումը, նոր հատկանիշներով բույսեր ստանալը, բույսեր, որոնք հնարավորություն ունեն բարձր արդյունավետությամբ օգտագործելու արտաքին միջավայրի փոփոխվող պայմանները։

Սերմնաբուծությունը բարձր բերքատվության անհրաժեշտ օղակներից մեկն է, որի նպատակն է բազմացնել և բարելավել շրջանացված սելեկցիոն ու տեղական սորտերը։ Հանրային տնտեսությունում մշակվում են եգիպտացորենի ՎԻՐ—42 հիբրիդը, տեղական սպիտակ և Աբաշական դեղին սորտերը։ ՎԻՐ—42 հիբրիդը միջահաս է, կոլտնտեսության պայմաններում ծլելուց մինչև հասունացումը տևում է 130—140 օր։ Աբաշական դեղին սորտի սերմը ներմուծվում է Վրաստանից, քանի որ կոլտնտեսության պայմաններում լրիվ չի հասունանում (վեգետացիայի շրջանը տևում է 160—180 օր)։ Տեղական սպիտակ սորտը միջվաղահաս է, վեգետացիայի տևողությունը 115—125 օր է։ Այս սորտի առավելությունը մյուս սորտերի համեմատությամբ այն է, որ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՀԱՏԿԱՆԻՇՆԵՐԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ*

(Սոց. ազգերի երեք հատկանիշների մարման կոնցեպցիայի առթիվ)

XXII համագումարից հետո պարտիայի նոր ծրագրի առանձին հատվածները մեկնաբանելիս առանձին տեսաբաններ առաջադրեցին հետևյալ կոնցեպցիան. երբ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում սոցիալիստական ազգերի բնորոշ չորս հատկանիշներից միայն լեզվի ընդհանրության հատկանիշն է մնում իր ուժի մեջ, իսկ մնացած երեք հատկանիշները՝ այն է տնտեսական կյանքի, տերիտորիայի և հոգեկան կերտվածքի ընդհանրության հատկանիշները մարում են և այդպիսով դադարում են արդի ժամանակաշրջանում սոցիալիստական ազգերի հատկանիշները լինելուց, նրանք այլևս կիրառելի չեն սոցիալիստական ազգերի նկատմամբ: Այս կոնցեպցիան իր վառ արտահայտությունն է գտել «Вопросы истории» հանդեսի 1961 թ. № 12-ում (էջ 8—9):

Նախքան այդ կոնցեպցիայի քննարկմանն անցնելը, նշենք, որ սխալ է ազգերի չորս հատկանիշների հայտնագործությունը վերագրել Ստալինին, ինչպես դա արվում էր անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում: Ճշմարտությունն այն է, որ դեռևս անցյալ դարի իննսունական թվականներից սկսած՝ սոցիալ-դեմոկրատական մարքսիստական գրականության մեջ, այդ թվում և Վ. Ի. Լենինի մոտ, այս կամ այն առնչությամբ նշվել են այդ չորս հատկանիշները և սկզբունքորեն ընդունվել հետևողական մարքսիստների կողմից: Ստալինը որոշ սիստեմի վերածեց դրանք՝ բացահայտելով նրանց միջև գոյություն ունեցող օրինաչափ կապը:

Այժմ դառնանք վերը բերած կոնցեպցիայի վերլուծմանը: Սկսենք տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշից:

Ինչո՞ւ է մարում սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը և դադարում այդ նշանակությունն ունենալուց: Այն պարզ պատճառով, ասում են մեզ, որ բոլոր միութենական ռեսպուբլիկաներում տիրապետում են միասնական, ընդհանրական արտադրական հարաբերություններ՝ սոցիալիստական արտադրական հարաբերություններ և այդ հանգամանքի շնորհիվ ազգերը չեն տարբերվում իրենց տնտեսական կյանքով միմյանցից, մինչդեռ լեզվի հանգամանքով ազգերը տարբերվում են միմյանցից և այդ պատճառով էլ լեզուն մնում է որպես ազգերի մնայուն հատկանիշ, իսկ տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը կորցնում է իր նշանակությունը, հետևապես և նա մարող հատկանիշ է և կիրառելի չէ սոցիալիստական ազգերի նկատմամբ:

Եթե իրոք՝ սա է բովանդակում իր մեջ տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը, ապա պետք է հետևողական լինել և ասել, որ այս հատկանիշը կիրառելի չէ նաև բուրժուական ազգերի նկատմամբ, որովհետև բուրժուական երկրներում նույնպես տիրապետում են ընդհանրական արտադրական հարաբերություններ՝ կապիտալիստական արտադրական հարաբերություններ, օրինակ՝ եվրոպական կապիտալիստական երկրներում: Իսկ եթե այս հատկանիշը կիրառելի չէ նաև բուրժուական ազգերի նկատմամբ էլ, կնշանակի, նա

* Տպագրվում է մտքերի փոխանակության կարգով— խմբ.



առհասարակ ազգը բնորոշող հատկանիշ չէ: Սա անխուսափելի հետևություն է՝ քննարկվելիք հատկանիշի մարման կողմնակիցների կոնցեպցիայից:

Ո՞րն է այդ կոնցեպցիայի արատավոր կողմը: Արատավոր կողմը—դա տնտեսական կյանքի ընդհանրության բովանդակության սխալ ընկալումն է: Ըստ Լենինի և նրան հետևող տեսաբանների՝ տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը բովանդակում է իր մեջ ոչ թե տիրապետող արտադրական հարաբերությունները (բուրժուական թե սոցիալիստական դա միևնույն է), այլ այդ արտադրական հարաբերությունների հիման վրա, նրանց առկայության պայմաններում որոշ տերիտորիայի վրա ապրող ազգի տարբեր հատվածների ներգրավումը տնտեսական կյանքի մեջ:

Ուսումնասիրելով ռուս բուրժուական ազգի կազմավորման պրոցեսը, Վ. Ի. Լենինն ասում է, որ սկսած 17-րդ դարից Ռուսաստանում տեղի է ունենում մասնատված շրջանների, երկրների ու իշխանությունների (княжества) փաստական միաձուլումը մի ամբողջության մեջ: Ինչի՞ շնորհիվ առաջ եկավ այդ միաձուլումը: Շնորհիվ «մարզերի միջև ուժեղացող փոխանակության, աստիճանաբար աճող ապրանքային շրջանառության, տեղական փոքրիկ շուկաների համակենտրոնացման ու մեկ համառուսաստանյան շուկայի ստեղծման» (Լենին, հատոր 1-ին, էջ 178): Ուրեմն, ո՞րն է ազգի կազմավորման էական ու անհրաժեշտ կողմերից մեկը.— շրջանների, ժողովրդի առանձին հատվածների մասնատվածության վերացումը և նրանց ներգրավումը ընդհանուր տնտեսական կյանքի մեջ: Այդ ընդհանուր տնտեսական կյանքը նշանավորվում է, եթե տեսանելին նկատի առնենք, ապրանքաշրջանառության զարգացմամբ, որը դրսևորում է հասարակական աշխատանքի տերիտորիալ բաժանումը՝ առաջին հերթին:

Այսպիսով, ազգի տնտեսական կյանքի ընդհանրությունը— դա զարգացող կամ տիրապետող արտադրական հարաբերությունների հիման վրա ազգի տարբեր հատվածների տնտեսական միավորումն է, այդ հատվածների մեջ տնտեսական կապերի ստեղծումն է, նրանց զարգացումը, կապեր, որոնց հիմքում ընկած է աշխատանքի բաժանումը:

Ահա թե ինչու լեզվի և տերիտորիայի ընդհանրության հետ մեկտեղ, ազգը բնորոշող էական հատկանիշ է՝ տնտեսական կյանքի ընդհանրության հատկանիշը, որն իր այս բովանդակությամբ աշխատանքի բաժանման հիման վրա ազգի հատվածների միավորումը մի տնտեսական ամբողջության մեջ, կիրառելի է, իրական է և բուրժուական և սոցիալիստական ազգերի նկատմամբ:

Սակայն, չպետք է մազաչափ անգամ աչքաթող անել, որ այս հատկանիշի բովանդակությունը մի կերպարանք է ընդունում բուրժուական ազգերի մոտ և մի այլ կերպարանք՝ սոցիալիստական ազգերի մոտ: Բուրժուական ազգերի տնտեսական կյանքի ընդհանրությունը հիմնված է արտադրության միջոցների կապիտալիստական սեփականության, շահագործման, շահագործող և շահագործվող դասակարգերի շահերի հակամարտության, դասակարգային պայքարի և տնտեսական կյանքի տարերքի վրա:

Միանգամայն այլ հիմքերի վրա է աճում սոցիալիստական ազգերի տնտեսական ընդհանրությունը:

Այդ ընդհանրությունն այստեղ հիմնված է արտադրության միջոցների հասարակական սեփականության, շահագործման և շահագործող դասակարգերի բացակայության պայմաններում— իրար դաշնակցած բանվոր և գյուղացի դասակարգերի համերաշխ համագործակցության, ազգի հատվածների պլանային տնտեսական միավորման, աշխատանքի պլանային բաժանման, ազգի բոլոր սոցիալական խմբերի շահերի ընդհանրության, ընդհանուր ժողովրդատնտեսական պլանի կենսագործելու ասպարեզում նրանց շահագրգռվածության և պատասխանատվության վրա:

Այսպիսով, տեսնում ենք, որ այս հատկանիշը, թեև բովանդակության տարբեր դրսևորումներ է ընդունում կապիտալիստական և սոցիալիստական հասարակարգերում, սակայն, չի դադարում այդ հասարակարգերում զարգացող ազգերի գործուն հատկանիշը լինելուց:

կագրական տվյալների վրա, մենք ասացինք, որ նման ապաազգայնացում տեղի չի ունենում, դա մտացածին մի կոնցեպցիա է, որը չի հիմնավորվում ոչ միայն իրական տվյալներով, այլև տեսական նկատառումներով։

Իրոք, տեսականորեն էլ չի կարելի հիմնավորել, իբր սոցիալիզմի ժամանակ պետք է տեղի ունենա անընդհատ «ժողովուրդների գաղթ»։ Եթե կապիտալիզմի ժամանակ, տնտեսական անհամաչափ զարգացման օրենքը և կապիտալիզմի այլ օրենքներ, գործազրկություն և այլն առաջացնում են ուժեղ էմիգրացիոն ալիք տնտեսապես թույլ զարգացած երկրներից դեպի առավել զարգացած կապիտալիստական երկրները, ապա սոցիալիզմի ժամանակ տնտեսական համաչափ զարգացման օրենքը և սոցիալիզմի այլ օրենքներ ապահովում են ազգաբնակչության, սոցիալիստական ազգի աշխատանքային ռեսուրսների զբաղվածությունը յուրաքանչյուր ազգային ռեսպուբլիկայում։ Այս օրինաչափությունն իր արտահայտությունն է գտել թե՛ յոթնամյակի և թե՛ ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման քսանամյա պլանում։

Սոցիալիզմի առավելությունը կապիտալիզմի համեմատությամբ նաև այն է, որ սոցիալիզմն ապահովում է ազգաբնակչության զբաղվածությունը ամեն մի ազգային ռեսպուբլիկայում։

Սա անշուշտ, չի բացառում միութենական ռեսպուբլիկաների փոխադարձ օգնությունը մասնագետ կադրերով, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսներով, եթե դրա կարիքը այս կամ այն էտապում զգացվի, սակայն սա չի կրել և չի կրելու «ժողովուրդների գաղթի» բնույթ։

Մեզ մնում է վերլուծել ու քննել տերիտորիալ ընդհանրության հատկանիշի նշանակության վերացման ու մարման կողմնակիցների առաջադրած մեկ փաստարկ ևս։ Նոր ծրագրում ասված է. «ՍՍՌՄ շրջանակներում միութենական ռեսպուբլիկաների միջև սահմաններն ավելի ու ավելի են կորցնում իրենց երբեմնի նշանակությունը»։ Ծրագրի այս դրույթն իբր թե հիմք է տալիս այդ տեսաբաններին պնդելու, որ սահմաններն այլևս ոչ մի նշանակություն չունեն, հետևաբար և ազգերի տերիտորիալ ընդհանրությունները, որոնք սահմանազատված են միմյանցից սահմաններով, նույնպես ոչ մի նշանակություն չունեն։

Հանրահայտ է, որ սահմանների նշանակության փոփոխման մասին առաջին անգամ նշեց Ն. Ս. Խրուշչովը 1959 թ. մարտի 7-ին Լայպցիգում արտասանած իր ճառի մեջ։ Ընկ. Ն. Ս. Խրուշչովն ասաց, որ սովետական ազգային ռեսպուբլիկաների միջև սահմաններն «ըստ էության կարծես թե ջնջվել են»։

Ի՞նչ բովանդակություն էր արտահայտում ընկ. Ն. Ս. Խրուշչովի այս դրույթը։ Դա պետք էր ընկալել այսպես. եթե 25—30 տարի առաջ Սովետական Միության ռեսպուբլիկաների միջև եղած սահմաններն արտահայտում էին այդ ռեսպուբլիկաների միջև գոյություն ունեցող տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակների տարբերությունը, ապա քանի գնաց, այնքան սահմանները կորցրին այդ նշանակությունը։ Պարտիայի ձեռք առած միջոցառումների շնորհիվ տասնամյակների ընթացքում տեղի ունեցավ բոլոր սովետական ազգային ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակների հավասարում, համահարթում, որի շնորհիվ էլ սահմանները՝ վերը նշված վաղեմի նշանակությունը կորցրին։

Կամ թե 30—35 տարի առաջ սահմանները սովետական ռեսպուբլիկաների միջև արտահայտում էին զգալի չափի իրարից կտրվածություն և տնտեսական ու կուլտուրական կապերի համեմատական ցածր աստիճանի առկայություն։ Շնորհիվ տեխնիկական աննախընթաց առաջադիմության, այդ թվում և հաղորդակցության միջոցների զարգացման, վերացել է տերիտորիայի տարանջատվածությունը, նրա հետ կապված տեխնիկական վաղեմի արգելքները — ժողովուրդների, ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական մերձեցման ճանապարհին և սահմաններն այդ իմաստով կորցրել են իրենց վաղեմի դերն ու նշանակությունը։

Սակայն, կորցնելով հիշատակած բնույթի նշանակությունը, սահմանները չեն վերացել և պահպանում են որոշակի նշանակություն, ճիշտ այնպես, ինչպես որ փողը, արժեքը, ապրանքադրամային հարաբերությունները, պետու-



թյունը և այլն կորցրել են իրենց երբեմնի նշանակությունը, բայց ինչ որ նշանակություն պահպանել են, կամ նոր նշանակություն են ստացել սոցիալիստական հասարակարգում։ Չի կարելի բավարարվել միայն բացասական բնութագրումով, այսինքն չի կարելի բավարարվել այս ֆորմուլայով, թե «կորցրել է երբեմնի նշանակությունը»։ Պետք է անպայման կոնկրետ կերպով մատնանշել և ճիշտ պատկերացում ունենալ, թե ո՞ր նշանակությունն է կորցրել, ո՞ր նշանակությունն է պահպանել և կամ ի՞նչ նոր նշանակություն է ստացել։

Միայն այս մոտեցումը կապահովի, զերծ կպահի մեզ անսկզբունքայնությունից և սայթաքումներից։ Մենք պնդում ենք, որ սահմանների մեջ պարփակված սոցիալիստական ազգի տերիտորիալ ընդհանրությունը չի դադարում ազգը բնորոշող հատկանիշ լինելուց։

Ինչով ենք հաստատում այս թեզը։ Նախ՝ սոցիալիստական պրակտիկայով և երկրորդ՝ տեսական հիմունքներով։

Պետք է ասել, որ սովետական սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրության կարգավորումը (устройство) որակապես ավելի բարձր է, քան բուրժուական ազգերի տերիտորիալ ընդհանրությունը։ Ինչո՞ւ։ Որովհետև սոցիալիզմի ժամանակ որոշ անհրաժեշտ և նպաստավոր գործոնների առկայության պայմաններում հնարավորություն է ընձեռվում ազգի՝ տարբեր տերիտորիաներում ցրված հատվածների վերամիավորման իրագործումը մեկ տերիտորիայում, իր ազգային պետական տերիտորիայում։

Բերենք պարտիայի մի շարք միջոցառումները, որոնք նպաստեցին Սովետական Միության սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրության ամրապնդմանը և ազգի տարբեր տերիտորիաներում եղած հատվածների վերամիավորմանը։ Այդ ձեռնարկումներից էին.

1. Արևելյան և արևմտյան Բելոռուսիայի վերամիավորումը միասնական Բելոռուսական սոցիալիստական պետության մեջ։
2. Կլայպեդայի մարզի հանձնումը Լիտվային։
3. Արևմտյան Ուկրաինայի, Հյուսիսային Բուկովինայի (Ռումինիայից) Անդրկարպատյան Ուկրաինայի (Չեխոսլովակիայից) վերամիավորումը և Ղրիմի միացումը Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկային։
4. Ղազախստանի կողմից՝ հաշվի առնելով ազգային մոմենտը՝ Բոստանդիկյան շրջանի հանձնումը Ուզբեկստանի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկային։
5. Ուզբեկստանի կողմից՝ դարձյալ հաշվի առնելով ազգային մոմենտը՝ Դալվերզինի տափաստանի հարավային մասի հանձնումը Տաջիկստանի Սոցիալիստական Ռեսպուբլիկային և այլն։

Այս բոլոր ակտերը, որոնց նպատակը Սովետական Միության սոցիալիստական ազգերի տերիտորիալ ընդհանրությունների ամրապնդումն էր և ժողովուրդների փոխադարձ վստահության ու բարեկամության ուժեղացումը, հնարավոր էր միայն սոցիալիստական հասարակարգի պայմաններում և նման ակտեր, լենինյան սկզբունքների հիման վրա, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա կարող են և կիրագործվեն նաև հետագայում։ Այս է թելադրում մեզ պրակտիկան։

Գուցե առարկեն, թե այդ բոլորը տեղի է ունեցել կոմունիզմի առաջին փուլի՝ սոցիալիզմի ժամանակ, իսկ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ազգերի տերիտորիալ ընդհանրության ամրապնդում չի լինի։ Այդ առարկությունը միայն ճիշտ կլիներ այն դեպքում, երբ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սկսվեր ազգերի վերացման կամ մահացման պրոցես, որպիսի տեսակետը պաշտպանում են կոսմոպոլիտները։ Այդպիսիներին հարկ է հիշեցնել Լենինի դրույթն այն մասին, որ պետական և ազգային տարբերությունները դեռ երկար կմնան համաշխարհային պրոլետարական դիկտատուրայի հաղթանակից հետո էլ, որ «ինտերնացիոնալ կուլտուրան ապազգային չէ» և վերջապես, XXII համագումարում ընկ. Խրուշչովի հայտարարությունն այն մասին, որ ՍՍՌՄ-ում կոմունիզմի հիմնական կառուցու-

հանուր գծերի զարգացմանը, նրանց փոխադարձ վստահության ու բարեկամության հետագա ամրապնդմանը»:

Մի այլ տեղ ևս, ընդհանուր գծերի մասին. «ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակի շնորհիվ... կզարգանան նրանց (սոցիալիստական ազգերի Ա. Ե.) հոգևոր կերպարի կոմունիստական ընդհանուր գծերը»:

Բացասո՞ւմ է արդյոք սոցիալիստական ազգերի հոգևոր կերպարի ընդհանուր գծերի առաջացումն ու զարգացումը, պայմանավորված կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացմամբ, ազգային տարբերությունների, այդ թվում և հոգեկան կերտվածքի, «ազգային կոլորիտի» առկայությունը անգամ ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակից հետո էլ:

Պարտիայի ծրագիրն այդ հարցին պատասխանում է. «Սակայն ազգային տարբերությունների «...ջնջվելը, զգալիորեն ավելի տևական պրոցես է, քան դասակարգային սահմանագծերի ջնջվելը» կամ թե. «Պարտիան թույլ չի տալիս ազգային առանձնահատկությունների ոչ անտեսում, ոչ էլ ուռճացում»: Հաշվի առնելով այս բոլորը և նկատի ունենալով սոցիալիստական ազգերի հեռանկարը կամ ապագան, պարտիան ազգային հարաբերությունների ասպարեզում առաջ է քաշում հետևյալ խնդիրները. ա) շարունակել բոլոր սովետական ազգերի և ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի համակողմանի զարգացումը. բ) այսուհետև ևս վարել սովետական ռեսպուբլիկաների տնտեսության համակողմանի զարգացման գիծ, գ) հասնել ՍՍՌՄ ժողովուրդների սոցիալիստական կուլտուրայի հետագա բազմակողմանի ծաղկման. դ) հետագայում ևս ապահովել ՍՍՌՄ ժողովուրդների լեզուների ազատ զարգացումը. ե) այսուհետև ևս հետևողականորեն կիրառել ինտերնացիոնալիզմի սկզբունքները ազգային հարաբերությունների ասպարեզում, ամրապնդել ժողովուրդների բարեկամությունը:

Կա՞ արդյոք, որևէ ընդհանուր բան պարտիայի կողմից ազգային հարաբերությունների ասպարեզում առաջադրված և կիրառվող այս հինգ ծրագրային խնդիրների և հոգևոր կերտվածքի ընդհանրության հատկանիշի մարման կողմնակիցների պաշտպանած կոնցեպցիայի միջև: Ոչ, ոչ մի ընդհանուր բան:

Պարտիայի ծրագրից կարելի է մի մեջբերում ևս կատարել, որը բացահայտում է սոցիալիստական ազգերի ընդհանուր և առանձնահատուկ կողմերի միասնությունը, որը չի հակադրում ընդհանուրը՝ առանձնահատուկին, այլ դրսևորում է նրանց անքակտելի կապը. «պաշտպանելով յուրաքանչյուր ժողովրդի առաջադիմական տրադիցիաները, դրանք դարձնելով սովետական բոլոր մարդկանց սեփականությունը, պարտիան ըստ ամենայնի կզարգացնի կոմունիզմ կառուցողների նոր, բոլոր ազգերի համար միասնական ռևոլյուցիոն տրադիցիաներ»:

Ինչպես տեսնում ենք այստեղ մարման մասին ոչ մի խոսք չկա: Ընդհակառակը՝ առաջադեմ տրադիցիաների պաշտպանության մասին է խոսքը, այդ տրադիցիաները սովետական բոլոր ժողովուրդների սեփականություն դարձնելու մասին է խոսքը, և իհարկե, չբացասելով այդ տրադիցիաները՝ պատմական նոր պայմաններում կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման ընթացքում նոր, կոմունիստական, բոլոր սոցիալիստական ազգերի համար միասնական տրադիցիաների մասին է խոսքը:

Սոցիալիստական ազգերը շարունակում են գոյություն ունենալ և բարգավաճել հենց այն հանգամանքի շնորհիվ, որ իրականում նրանք խարսխված են, հիմնվում են տնտեսական կյանքի, տերիտորիայի, հոգեկան կերտվածքի, և իհարկե, լեզվի ընդհանրության վրա. այլ խոսքով՝ սոցիալիստական ազգերի գոյությունն ու զարգացումը պայմանավորվում է ազգը բնորոշող չորս հատկանիշների միատեղ առկայությամբ, մի դրույթ, որն ընդունված է պարտիական-գիտական գրականության մեջ, և որը անհիմն կերպով փորձում են վերանայել «երեք հատկանիշների մարման» կոնցեպցիայի հեղինակները:

ԱՐՏՈ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպություններում արդեն սկսվել են հաշվետու-ընտրական ժողովները, որոնք կշարունակվեն մինչև նոյեմբերի կեսերը. նոյեմբերի 15-ից մինչև դեկտեմբերի մեկը տեղի կունենան քաղաքային, շրջանային, արդյունաբերական-արտադրական և կոլտնտեսային-սովխոզային արտադրական գոտիների պարտիական կազմակերպությունների կոնֆերանսները:

Պարտիական օրգանների հաշվետվություններն ու ընտրություններն անց են կացվում քաղաքական՝ ու տնտեսական բուռն վերելքի պայմաններում: Կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, հաշվետու ժամանակաշրջանում նշանակալի հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական տնտեսության, գիտության, գրականության ու արվեստի զարգացման ասպարեզում:

Այդ ամենը ակնառու վկայում են մեր պարտիական կազմակերպությունների մարտունակության, կազմակերպական և քաղաքական մեծ աշխատանքի մասին: Խորապես գիտակցելով իրենց գործունեության գլխավոր խնդիրը՝ արտադրական պլանների կատարման ապահովումը. պարտիական կազմակերպություններն այժմ ավելի մոտիկից և գործիմաց են զբաղվում իրենց առջև ծառացած տնտեսական ու կուլտուրական շինարարության, մասսաների գաղափարական դաստիարակության կոնկրետ հարցերով: Ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման բարելավումը, արտադրական սկզբունքով վարից վեր պարտիայի ղեկավար օրգանների վերակառուցումը բարերար ազդեցություն ունեցան պարտիական աշխատանքի բովանդակության, նրա ձևերի վրա, մեծ չափով նպաստեցին պարտիական կազմակերպությունների դերի և հեղինակության բարձրացմանը, աշխատավորական մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվության զարգացմանը:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում հաշվետվություններն ու ընտրություններն ընթանում են հանուն ՍՄԿՊ XXII համագումարի, Կենտկոմի նոյեմբերյան և հունիսյան պլենումների որոշումների անշեղ իրականացման: Հաշվետու-ընտրական ժողովների և կոնֆերանսների նախապատրաստումն ու անցկացումը, հի- բավի, կնպաստեն պարտիայի շարքերի միասնության և համախմբվածության հետագա ամրապնդմանը, պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը:

Հաշվետու ժամանակաշրջանում շատ պարտիական կազմակերպություններ ձեռք են բերել հարուստ փորձ, զգալի չափով բարելավվել ու կատարելագործվել են տնտեսության ղեկավարությունը: Կարելի է նշել Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոմունիստների արդյունավետ գործունեությունը: Չնայած վերջին ժամանակներս այստեղ իրականացվում են արտադրության վերակառուցման և ընդլայնման խոշոր աշխատանքներ, այնուամենայնիվ, ձեռնարկությունը ո՛չ միայն գործում է համաչափ, այլև տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով սիստեմատիկաբար գերակատարում է արտադրական պլանները, հաջողությամբ յուրացնում և թողարկում արտադրանքի նոր տեսակներ: Եվ այդ շնորհիվ այն բանի, որ գործարանի պարտիական կազմակերպությունը և նրա պարտիական կոմիտեն կարողացել են ճիշտ տեղաբաշխել կոմունիստների ուժերը արտադրության վճռական տեղամասերում, բարձրացնել նրանց պատասխանատվությունը գործի նկատմամբ, մոբիլիզացնել կոլեկտիվի բոլոր անդամներին՝ հաղթահարելու դժվարությունները, խելացի օգտագործելու արտադրության ներքին ռեզերվները:

Անիի գյուղական արտադրական վարչության Ջիթհանքովի կոլտնտեսության պարտիական կազմակերպության ակտիվ գործունեությամբ լուրջ բեկում է ստեղծվել տնտեսության բոլոր ճյուղերում: Այստեղ կոմունիստներն անմիջականորեն մասնակցում են նյութական բարիքների ստեղծմանը, ցույց են տալիս հասարակական պարտքի կատարման լավ օրինակներ: Կոմունիստների ավանգարդային դերի բարձրացումը, պարտիական կազմակերպության կազմակերպական-գաղափարական աշխատանքի բարելավումը հնարավորություն ընձեռեցին կարճ ժամա-

նակում զգալի չափով ավելացնելու անասնաբուծության մթերատվությունը, կատարելու և գերակատարելու պետությանը անասնաբուծական մթերքների վաճառքի կիսամյակի պլանները:

Մեզ մոտ քիչ չեն նման կազմակերպությունները: Խնդիրն այն է, որ հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում խոր ու բազմակողմանիորեն վերլուծվի ու ընդհանրացվի առաջավոր ձեռնարկությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի ուսանելի փորձը, կոնկրետ միջոցառումներ նախատեսվեն նորի, առաջավորի տարածման ու արմատավորման, կոմունիստական աշխատանքի շարժման ծավալման, կոմունիստական հարաբերությունների հետագա զարգացման, պարտիական, սովետական, տնտեսական աշխատանքում հասարակական հիմունքների ծավալման ուղղությամբ:

Ակնբախ են հաջողությունները: Սակայն սխալ կլիներ կարծել, թե մեզ մոտ ամեն ինչ բարվոք է. ամեն ինչ լավ: Ռեսպուբլիկայում կան արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք չեն կատարում իրենց արտադրական պլանները, թողարկում են ցածրորակ արտադրանք, բարձր է ինքնարժեքը. առանձին շինարարական կազմակերպություններ ժամանակին ու բարձր որակով շահագործման չեն հանձնում արդյունաբերական, կուլտուր-կենցաղային շենքերը և բնակելի տները: Դեռևս ունենք կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք արդյունավետ չեն օգտագործում հողը, տեխնիկան, գյուղատնտեսական քիչ մթերքներ են արտադրում և այլն:

Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և պարտիական կոնֆերանսներում անհրաժեշտ է լայնորեն ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բացահայտել թերությունները և դրանք ծնող պատճառները, մշակել գործնական միջոցառումներ՝ արագորեն վերացնելու այդ ամենը, բարելավելու և կատարելագործելու պարտիական, սովետական ու տնտեսական օրգանների, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը: Միաժամանակ հարկավոր է աշխուժացնել պարտիական-պետական վերահսկողության տեղական օրգանների, նրանց աջակցող խմբերի ու պոստերի, արտադրական ու առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտկազմակերպություններին կից ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության իրավունքն իրագործող հանձնաժողովների աշխատանքը:

Արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, տրանսպորտի և գիտա-հետազոտական հիմնարկների սկզբնական պարտիական կազմակերպությունների



հաշվետու-ընտրական ժողովներում, քաղաքային, շրջանային և արդյունաբերական արտադրական գոտիների պարտիական կոնֆերանսներում անհրաժեշտ է ուշադրությունը բևեռել տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով արտադրական պլանների կատարումն ապահովելու, աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները համարձակորեն արմատավորելու, աշխատանքի արտադրողականության բարձրացման նոր ուղիներ որոնելու հարցերի վրա: Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնել արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների արագ յուրացման ու թողարկման, արտադրության ճիշտ պլանավորման, պետական միջոցների արդյունավետ ծախսման հարցերին:

Գյուղատնտեսության բնագավառում ռեսպուբլիկայի գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունների և արտադրական պարտկոմների գլխավոր խնդիրն է՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա վերելքի ապահովումը, ինքնարժեքի իջեցումը, արտադրանքի մեկ միավորի վրա աշխատանքային ծախսումների նվազեցումը: Կոլտնտեսությունների և սովխոզների պարտիական կազմակերպությունները պետք է ձեռնարկեն բոլոր միջոցները՝ արագորեն հաղթահարելու բնական անբարենպաստ պայմանների հետևանքները, լավ նախապատրաստելու և անցկացնելու բերքահավաքը, ստեղծելու կերի կայուն բազա, ապահովելու ստանձնած պարտավորությունների կատարումը: Նրանք առավել գործուն միջոցառումների պետք է դիմեն հետ մնացող կոլտնտեսություններն ու սովխոզները առաջավորներին հասցնելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը կարևորագույն միջոցառումներ մշակեց պարտիայի գաղափարական աշխատանքը բարելավելու և կատարելագործելու ուղղությամբ: Ելնելով պլենումի որոշումները, պարտիական կազմակերպությունները պետք է վճռականորեն բարելավեն քաղաքական-դաստիարակչական աշխատանքը: Հաշվետու-ընտրական ժողովներում և պարտիական կոնֆերանսներում կոմունիստների ուշադրությունը պետք է կենտրոնացնել գաղափարական աշխատանքը կյանքի, տնտեսական շինարարության կոնկրետ խնդիրների հետ ներդաշնակելու, մասսաների վրա գաղափարական ներգործման միջոցների, ձևերի ու մեթոդների կատարելագործման հարցերի վրա:

Անհրաժեշտ է լավ նախապատրաստել ու անցկացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները: Այդ գործում մանրուքներ չկան: Հարկավոր է ճիշտ ընտրել ժողովի օրը, ժամը և այդ մասին ժամանակին իրազեկ պահել կոմունիստներին՝ ապահովելով նրանց բոլորի մասնակցությունը ժողովին: Պետք է խնամքով կազմել հաշվետու զեկուցումը, որպեսզի այն ընդգրկի պարտկազմակերպության գործունեության բոլոր կողմերը, վերլուծվի ու ընդհանրացվի կատարվածը: Չէ՞ որ հաշվետու զեկուցումն է տոն տալիս ամբողջ ժողովին, մեծ չափով որոշում նրա աշխատանքի բովանդակությունը:

Միաժամանակ լուրջ ուշադրություն պետք է հատկացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավար օրգանների ընտրությանը: Այդ օրգաններում պետք է ընտրվեն առաջավոր բանվորներ, կոլտնտեսականներ, մասնագետներ, որոնք իրենց լավ են դրսևորել պրակտիկ աշխատանքում. անհրաժեշտ է կոմիտեների և քարտուղարների կազմում համարձակ առաջ քաշել երիտասարդ կոմունիստներին ու կանանց: Մի շարք պարտիական կազմակերպություններ անբավարար են զբաղվում կին կադրերի աճեցման, նրանց պարտիական աշխատանքի առաջքաշման հարցերով: Այսպես, անցյալ տարի Ապարանի սկզբնական պարտիական կազմակերպությունների բյուրոների կազմում ընտրված 181 անդամներից միայն տասնութն էին կին: Չափազանց քիչ է կանանց թիվը սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների կազմում: Արտաշատում 109 սկզբնական կազմակերպությունների քարտուղարներից միայն տասն էին կին, իսկ Բասարգեչարում 68 քարտուղարներից՝ 4-ը, Անիում 51-ից՝ 6-ը և այլն:

Անհրաժեշտ է մեծ չափով բարելավել ու ամրապնդել սկզբնական կազմակերպությունների քարտուղարների կազմը: Պետք է քարտուղար ընտրել այնպիսի կոմունիստի, որը լավ գիտե արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրությունը, սերտորեն կապված է իր կոլեկտիվի հետ, ունի նորի զգացում, ի վիճակի է հմտորեն գլխավորելու պարտիական կազմակերպության աշխատանքը:

Հաշվետու-ընտրական ժողովներն անցկացնելիս անհրաժեշտ է ստեղծել բոլոր նպաստավոր պայմանները, որպեսզի կոմունիստները հնարավորություն ունենան բազմակողմանի, պարտիական սկզբունքայնությամբ քննարկելու և հանգամանորեն ծանոթանալու կոմիտեների ու բյուրոների կազմում առաջադրվող թեկնածուներին, լրիվ պատկերացնելու նրանց արժանիքների մասին:

Արդյունաբերական ու առևտրական ձեռնարկությունների, սովխոզների և գիտահետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում պետք է ընտրել նաև ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող պարտիական հանձնաժողովներ: Ի դեպ, պարտբյուրոյի կամ քարտուղարի հաշվետու զեկուցման մեջ պետք է հանգամանորեն արտացոլվի ինչպես այդ հանձնաժողովների, այնպես էլ պարտիական-պետական վերահսկողության օրգաններին աջակցող խմբերի գործունեությունը:

Հաշվետու-ընտրական ժողովների հաջող անցկացումը մեծ չափով կախված է քաղկոմների, շրջկոմների և արտադրական պարտկոմների ամենօրյա, օպերատիվ ղեկավարությունից ու օգնությունից: Անհրաժեշտ է, ժողովներում ակտիվ մասնակցեն պարտիական կոմիտեների քարտուղարներն ու անդամները, սովետական ու տնտեսական օրգանների ղեկավարները, լինեն ոչ միայն խոշոր, այլև սակավանդամ կազմակերպություններում, որոնք հաճախ ավելի շատ են օգնության կարիք զգում:

Պարտիական օրգանների հաշվետվություններն ու ընտրությունները կարևոր իրադարձություն են պարտիական կազմակերպությունների կյանքում: Դրանք կազմակերպված, գործարար մթնոլորտում անցկացնելը կնպաստի ներպարտիական դեմոկրատիայի հետագա ընդլայնմանը, կոմունիստների ստեղծագործական ակտիվության զարգացմանը, սկզբնական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը:

Հաշվետու-ընտրական ժողովներին ու կոնֆերանսներին հաջորդելու է Հայաստանի կոմունիստական պարտիայի հերթական XXIII համագումարը: Ռեսպուբլիկայի կոմունիստների, բոլոր աշխատավորների պատվի գործն է՝ լարել բոլոր ուժերը, համագումարը դիմավորել նոր, նշանակալի հաջողություններով:



## ՉՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ՌԵԶԵՐՎՆԵՐ

Արդյունաբերական և բնակարանային շինարարության տարեցտարի ընդլայնվող մասշտաբների պայմաններում գնալով ավելի մեծ պահանջներ են ներկայացվում Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատին:

Արտադրական կարողություններն ընդարձակելու, նոր տեխնիկան և տեխնոլոգիան արմատավորելու, արտադրական կարողություններն ընդարձակելու միջոցով ցեմենտի, շիֆերի, կրի և ասբեստային խողովակների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ վերջին շրջանում այստեղ կգալի գործ է կատարված: Միայն 1962 թվականին շարք են մտել արտադրական նոր տեղամասեր, բաժանմունքներ, տեխնոլոգիական գծեր, տեղադրվել են նոր սարքավորումներ: Այդ ամենի շնորհիվ մեկ տարում ցեմենտի արտադրությունն ավելացավ 60 տոկոսով, յուրացվեցին ու մասսայաբար թողարկվեցին ասբոցեմենտի խողովակներ և այլն: Բայց, չնայած այդ բոլորին, կոմբինատը 1962 թվականի տնտեսական տարին փակեց մեծ ճեղքվածքով. երկիրը չստացավ մոտ 45 հազար տոննա ցեմենտ, ինչպես և՝ մեծ քանակությամբ շիֆեր, ասբոցեմենտի խողովակներ. խոտան արտադրանքի հետևանքով տրվեցին հումքի ու միջոցների խոշոր կորուստներ:

Ընթացիկ տարում դրությունը որոշ չափով բարելավվեց: Մշակված ու գործնականում իրականացված մի շարք միջոցառումների շնորհիվ կոմբինատը 100,1 տոկոսով կատարել է 1963 թվականի առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը:

Սակայն կոմբինատը ներկայումս աշխատում է իր ունեցած հնարավորություններից ցածր մակարդակով, դեռևս վճռական բեկում չի ստեղծվել արտադրության բոլոր օղակներում: Չնայած կոլեկտիվի ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորություններին, առաջին կիսամյակում թերակատարվեցին արտադրանքի առանձին տեսակների (ցեմենտ, կրաքար) թողարկման, ինչպես և աշխատանքի արտադրողականության ու արտադրանքի որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման պլանները:

Ինչո՞ւմն է բանը, ինչո՞ւ կոմբինատը դեռևս չի ապահովում պետական պլանների կատարումը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով, լրիվ չի կատարում իր պարտավորությունները, դրանով իսկ կաշկանդելով շինարարական կազմակերպությունների գործունեությունը:

Մեր կարծիքով պատճառները հիմնականում երկուսն են: Նախ՝ այստեղ աշխատանքը հստակ ու համաչափ չի կազմակերպված, լրիվ չեն օգտագործվում արտադրության ներքին ռեզերվներն ու հնարավորությունները: Երկրորդ՝ կոմբինատի պարտիական կազմակերպությունը և նրա կոմիտեն արդյունավետ ու հետևողականորեն չեն զբաղվում արտադրության ու աշխատանքի կազմակերպման արմատական հարցերով, գաղափարական ներգործման բոլոր միջոցները ուղղված չեն առաջադրված խնդիրների լուծմանը:

Փորձենք հիմնավորել մեր ասածը:

Արարատի կոմբինատը գործում է անհամաչափ, նրա աշխատանքում տեղ են գտել գրոհայնության տարրեր: Սովորաբար յուրաքանչյուր ամսվա առաջին երկու տասնամյակում գործերը համեմատաբար ընթանում են խաղաղ, առանց լարվածության, իսկ վերջին տասնօրյակում սկըսվում է գրոհը: Օրինակ, հունիսի 1—20 կատարվել էր ավյալ ամսվա պլանի 60 տոկոսը, իսկ վերջին տասնօրյակում՝ 40 տոկոսը: Այստեղից էլ խոտան արտադրանք, անարտադրողական ծախսեր, աշխատանքի ու միջոցների կորուստներ և այլն:

Արտադրության վրա բացասաբար է անդրադառնում այն, որ ժամանակին գործի չեն դրվում կոմբինատի նոր կարողությունները, հաճախ վատ են օգտագործվում եղած սարքավորումները: Այսպես. պլանով նախատեսված էր 1962 թվականի առաջին եռամսյակում շահագործման հանձնել տեխնոլոգիական չորրորդ գիծը, բայց կառուցողների մեղքով այն ձախողվեց: Շինարարականմոնտաժային աշխատանքների այդ կոմպլեքսից 1962 թվականի ապրիլին շահագործման է հանձնըվել միայն երեք օբյեկտ, իսկ 1963 թվականի առաջին եռամսյակում՝ տասը օբյեկտներից միայն հինգը: Այդ գործում քիչ մեղք չունեն նաև մոնտաժային կազմակերպությունները, որոնք ժամանակին չեն կատարել կավախառնիչների մոնտաժային գործերը:

Սակայն կոմբինատի ղեկավարությունը ո՛չ միայն արդյունավետ միջոցներ ձեռք չի առնում նոր կարողությունների գործարկումն արագացնելու համար, այլև երբեմն կառուցողներին ժամանակին չի ապահովում նախագծային անհրաժեշտ փաստաթղթերով, առիթ տալով անհարկի պարապուրդների, բանվորական ուժի կորուստների: Ավելին, ձեռնարկության ինժեներա-տեխնիկական աշխատողներն ինչպես հարկն է չեն վերահսկում նոր սարքավորումների տեղակայման աշխատանքին:

Կոմբինատի տեխնիկական ղեկավարության կողմից սարքավորումների վերանորոգման աշխատանքները ժամանակին չկազմակերպելու հետևանքով հաճախակի տեղի են ունենում վթարներ: 1962 թվականի IV եռամսյակում և 1963 թվականի հունվար ամսում մանրացման ցեխում տրվել է 1340 մեքենա-ժամ պարապուրդ, այրման ցեխում՝ 874 մեքենա-ժամ: Մեխանիկական ցեխը ժամանակին չի կատարում ցեխերի պատվերները, դրանով իսկ արհեստականորեն ձգձըգվում են վերանորոգման աշխատանքները:

Չնայած արտադրության մեքենայացման ուղղությամբ կատարված որոշ ձեռնարկումներին, այնուամենայնիվ դեռևս արտադրական առանձին պրոցեսներում շարունակվում է ձեռքի աշխատանքը, մի բան, որ թանկացնում է թողարկվող արտադրանքը, իջեցնում աշխատանքի արտադրողականությունը: Կոմբինատում լուրջ ուշադրություն չի հատկացվում նոր տեխնիկայի ներդրմանը: Այստեղ վաղուց ստացվել են մի շարք սարքավորումներ, որոնք չեն օգտագործվում, մնում են որպես «մեռած» կապիտալ: Այսպես՝ մինչև օրս չի գործում երկու-երեք տարի առաջ ստացված և շիֆերի ցեխում տեղադրված ագրեգատը. մետաղյա իրերի տեսակավորումը կատարվում է ձեռքով, մինչդեռ, մեկ տարի առաջ ստացված տեսակավորող մեքենան նույնիսկ չի տեղակայվել: Ցավոք, պարտիական կազմակերպությունը հանդուրժում է նման երևույթը և չի կարողանում տեխնիկական առաջադիմության գործում կոտրել պահպանողականությունը:

Արտադրական կարողությունների լրիվ օգտագործումը աշխատանքի արտադրողականության բարձրացման լուրջ ռեզերվ է: Մինչդեռ այստեղ ցածր է մեքենաների ու սարքավորումների օգտագործման գործակիցը: Օրինակ, պտտվող վառարանների օգտագործման գործակիցը 0,89-ի փոխարեն կազմել է 0,86 տոկոս, № 2 ջարդող ֆաբրիկայինը՝ 0.81-ի փոխարեն 0,77 և այլն. պտտվող վառարանների անբավարար օգտագործման հետևանքով 1962 թվականի վերջին ութ ամիսներին 35 հազար տոննա կլինկեր պակաս է արտադրվել:

Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի գործունեության «նեղ» տեղերից մեկը արտադրանքի ցածր որակն է: Ինչպես անցյալ տարի, այնպես էլ հիմա չեն կատարվում ցեմենտի որակի պլանները, մեծ չափերի է հասնում շիֆերի և ասբոխողովակների խոտան արտադրանքը: Այդ բացատրվում է ամենից առաջ նրանով, որ երկար ժամանակ կոմբինատում չէին կարողանում յուրացնել ու գործի գցել աղացը, ինչպես և շլամի ուղղահայաց ավազանը, ցեմենտի ամբարներ չունենալու պատճառով մինչև վերջերս էլ վառարաններն աշխատել են փոխանցիկ շլամով. դրա հետևանքով ցեմենտն առանց հանգստացնելու աղացից անմիջապես բեռնվում էր վագոնը: Պարտիական կազմակերպությունը արդյունավետ չի զբաղվում ինչպես արտադրանքի որակի բարձրացման, այնպես էլ ինքնարժեքի իջեցման, նյութերն ու միջոցները խնայողաբար ծախսելու հարցերով: Միայն որոշումներով ու խոսքով չէ, որ պետք է լուծվեն արտադրության համար կարևորագույն նշանակություն ունեցող այդ խնդիրները: Անհրաժեշտ են մեծ ջանքեր, պրակտիկ գործեր:

Արտադրական պլանների կատարման և արտադրանքի որակի բարձրացման գործում մեծ է հրամանատարական կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման, նրանց որակավորման նշանակությունը: Սակայն կոմբինատի պարտիական կոմիտեն քիչ ուշադրություն է հատկացնում այդ բնագավառին: Այստեղ երբեմն աշխատանքի են նշանակվում մարդիկ, որոնք չունեն անհրաժեշտ գործարար հատկանիշներ: Այսպես, գլխավոր մեխանիկի բաժնում աշխատանքի է ընդունվել Վ. Տրուբինը, որն իրեն չարդարացնելու պատճառով մեկ ամիս հետո ազատվել է աշխատանքից. երկար ժամանակ մատակարարման բաժնի պետն էր Հ. Պետրոսյանը, որը ո՛չ միայն վատ է կազմակերպել կոմբինատի նյութատեխնիկական մատակարարման գործը, այլև չարաշահել է իր պաշտոնը: Միշտ չէ, որ կադրերն օգտագործվում են խելացի, նպատակահարմար ձևով. մի՞թե դրանով չի բացատրվում այն, որ միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող տասը ընկերներից և ոչ մեկը չի աշխատում իր մասնագիտությամբ. մինչդեռ մի շարք մարդիկ զբաղեցնում են ինժեներա-տեխնիկական աշխատողների պաշտոնները, չունենալով անգամ միջնակարգ հանրակրթական կրթություն: Իհարկե, այստեղ խոսքը նրանց մասին չէ, ովքեր երկար տարիներ աշխատում են արտադրության մեջ, ունեն աշխատանքի մեծ փորձ և լավ կազմակերպիչ են:

Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի պարտիական կազմակերպությունը և նրա կոմիտեն ինչպես հարկն է չեն զուգորդում գաղափարական

և կազմակերպական աշխատանքը և այն ամբողջապես ուղղում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:

Առաջին հայացքից, կարծեք թե այդ ասպարեզում ամեն ինչ բարեհաջող է: Վերցնենք թեկուզ սոցիալիստական մրցության կազմակերպման ու ղեկավարման հարցը: Տարվա սկզբին կնքվել են սոցիալիստական մրցության պայմանագրեր ցեխերի, բրիգադաների միջև: Բայց պետք է ուղղակի ասել, որ այդ գործում գոյություն ունի ձևականություն, այն չի կրում գործարար բնույթ: Պարտիական կոմիտեն չնայած բազմիցս անդրադարձել է այդ հարցին, ընդունել է որոշումներ, սակայն դրությունը շատ քիչ է փոխվել: Պարբերաբար չեն ստուգվում ու ամփոփվում մրցության պայմանագրերը, ընդհանրացվում առաջավորների ուսանելի փորձը: Այդ մեծ չափով կօգներ ետ մնացող աշխատամասերի կոլեկտիվներին, բրիգադաներին և առանձին բանվորների՝ հասնելու առաջավորներին:

Պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները քիչ ուշադրություն են հատկացնում կոմունիստական աշխատանքի շարժմանը: Պաշտոնապես կոմբինատում տասը բրիգադա և երկու ցեխ պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար: Ի դեպ, դրանցից մի քանիսն արդեն մի քանի տարի է ինչ պայքարում են, բայց չեն հասել բաղձալի արդյունքի: Պարտիական կազմակերպությունը և ադմինիստրացիան ինչպես հարկն է չեն հետևում ու օգնում հայրենասիրական այդ շարժմանը, քիչ բան են անում, որ նրա մասնակիցները ապրեն ու աշխատեն կոմունիստաբար, կոմունիզմ կառուցողի բարոյական սկզբունքներն աստիճանաբար դառնան նրանց վարքի ու գործունեության չափանիշը: Կոմունիստական աշխատանքի շարժումն այստեղ դեռևս չի ստացել մասսայական բնույթ, այդ երևում է նրանից, որ կոմբինատի 50 բրիգադայից միայն տասն են պայքարում կոմունիստական աշխատանքի կոչման համար: Պարտիական կոմիտեի որոշումներն այդ հարցի վերաբերյալ դեռևս չեն կենսագործվել:

Կոմբինատի պարտիական կոմիտեն անբավարար է հետաքրքրվել և ուղղություն տվել ցեխային պարտիական կազմակերպությունների գործունեությանը, հաշվետու ժամանակաշրջանում իր նիստերում ոչ մի անգամ չի անդրադարձել ցեխային պարտկազմակերպիչների աշխատանքին, նրանց համար չի կազմակերպել սեմինարներ: Թերևս այդ է պատճառը, որ առանձին ցեխային պարտիական կազմակերպություններում ամիսներով չեն գումարվում ժողովներ, կամ ձևականորեն քննարկվում են հարցեր, որոնք գործին շատ քիչ են օգնում: Օրինակ, վերանորոգման ցեխի պարտիական կազմակերպությունը 1962 թվականին ունեցել է ընդամենը 5 ժողով և 4 բյուրոյի նիստ, ընդ որում բոլոր նիստերում քննարկվել է միայն մեկ հարց — հաստատվել են բյուրոյի աշխատանքային պլանները: Ցեմենտի ցեխային պարտիական կազմակերպությունը, նրա բյուրոն (քարտուղար Վ. Գինոսյան) դեռևս մոտիկից չեն զբաղվում արտադրության հիմնական հարցերով. այս ցեխում աշխատում են 23 պարտանդամ, որոնք մեծ ուժ են ներկայացնում, սակայն հաշվետու-ընտրական ժողովից հետո ունեցել են երկու ժողով և երկու բյուրոյի նիստ, որտեղ քննարկվել են արտադրանքի որակի, կոմունիստների քաղաքական ուսուցման և մի շարք այլ հարցեր: Սակայն ժողովները վատ նախապատրաստելու հետևանքով այդ կարևոր հարցերի քննարկումն անցել է ցածր մակարդակով և քիչ արդյունք է տվել: Ընդհանրապես կոմբինատում անբավարար է պարտիական վերահսկողությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, լավ չի կազմակերպված կատարման ստուգումը:

Առանձին կոմունիստների մոտ թույլ է հասարակական պարտքի զգացումը, նրանք ինչպես հարկն է իրենց չեն դրսևորում արտադրության մեջ: Թույլ են քննադատությունն ու ինքնաքննադատությունը. ժողովներում և նիստերում թերությունների մասին խոսում են ընդհանրապես, առանց կոնկրետ փաստերի ու մարդկանց անունները տալու: Իսկ այդ քիչ է անհանգստացրել պարտիական կոմիտեին:

Լուրջ թերություններ կան կոլեկտիվի անդամների գաղափարական-դաստիարակչական աշխատանքում: Եթե դատելու լինենք կարդացված դասախոսությունների, անցկացված զրույցների և կանխավ միջոցառումների քանակով, ապա կարծեք թե դրությունը լավ է: Սակայն գաղափարական ներգործման բոլոր լծակներն ուղղված չեն այն բանին, որ բոլոր մարդիկ գործեն ամբողջ եռանդով ու ստեղծագործաբար, աշխատեն բարձր արտադրողականությամբ: Այդ բնագավառում պակասում է գործնականությունը, ամենուրեք զգացվում է ֆորմալիզմը, քիչ են օգտագործվում քաղաքական-մասսայական աշխատանքի նոր, արդյունավետ ձևերն ու մեթոդները:

Սկսվում են սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները: Կարծում ենք, որ Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի կոմունիստներն իրենց ժողովում կանդրադառնան այս հարցերին և կոնկրետ միջոցներ կձեռնարկեն՝ հաղթահարելու արտադրության անշեղ վերելքն արգելակող խոչընդոտները:

Խ. ՍԱՖԱՐՅԱՆ

---

Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# «ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ» ԽՈՒՄԲԸ ԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ

Գ. ԳԱԼՈՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

*Ռուսաստանում մարքսիզմի տարածման և սոցիալ-դեմոկրատական շարժման ծավալման գործում խոշոր դեր է կատարել Գ. Վ. Պլեխանովի՝ 1883 թվականին հիմնադրած «Աշխատանքի ազատագրություն» խումբը: Հայտնի է, որ մինչ այդ, գյուղացիական դեմոկրատիայի գաղափարախոսները՝ նարոդնիկները իդեալականացնում էին գյուղացուն, գյուղացիական համայնքների մեջ էին տեսնում Ռուսաստանի սոցիալական վերափոխման և զարգացման կապիտալիզմի ուղուց խուսափելու հիմքը: Նրանք հավատում էին, որ Ռուսաստանում կարող է հաղթանակել գյուղացիական սոցիալիստական ռևոլյուցիան: Նրանց կողմից երկրում զարգացող կապիտալիստական հարաբերությունների և դրանց շնորհիվ բարձրացող բանվոր դասակարգի ռևոլյուցիոն դերի ժխտումը լուրջ խոչընդոտ էր հանդիսանում երկրում մարքսիզմի տարածման և բանվորական շարժման ծավալման համար:*

*Պլեխանովն առաջինն էր Ռուսաստանում, որ XIX դարի 70-ական թվականներին տեսավ ռուսական պրոլետարիատի, որպես ինքնուրույն ռևոլյուցիոն ուժի, ձևավորման պրոցեսն ու իր «Հասարակության տնտեսական զարգացման օրենքը և սոցիալիզմի խնդիրները Ռուսաստանում» հոդվածում (որը տպագրվեց 1879 թվականին* «Земля и Воля»*-ի 3-րդ և 4-րդ համարներում), առաջին քայլը կատարեց՝ պատմական մատերիալիզմի դիրքերից ռևոլյուցիայում բանվոր դասակարգի դերի գնահատման ուղղությամբ:*

*1879—1880 թվականներին Ռուսաստանում ստեղծված ռևոլյուցիոն սիտուացիան հաղթանակ չբերեց: Այդ, մի կողմից, հիասթափություն բերեց շատերին, մյուս կողմից էլ՝ ռևոլյուցիոն պայքարի շարունակման կողմնակիցներին ստիպեց որոնել նոր ուղիներ, ռևոլյուցիոն նոր տեսություն: Ցարական դաժան հալածանքներից խուսափելու նպատակով ռևոլյուցիոն նարոդնիկներից շատերը դարձան էմիգրանտներ: Էմիգրանտներից էր կազմված նաև «չերնոպերեդելցիների» խումբը՝ Գ. Վ. Պլեխանովի գլխավորությամբ, որն արտասահմանում ձեռնամուխ եղավ մարքսիզմի խոր ուսումնասիրմանը: Այստեղ Պլեխանովն իրեն ամբողջապես նվիրեց ռևոլյուցիոն աշխատանքին, ծանոթացավ Մարքսի, Էնգելսի աշխատություններին և XIX դարի 80-ական թվականների սկզբներից կանգնեց մարքսիզմի դիրքերի վրա, դարձավ նրա առաջին, խոշորագույն գաղափարախոսը Ռուսաստանում:*

*Պլեխանովն առաջինն էր ռուսական իրականության մեջ, որ հասկացավ նարոդնիկական հայացքների ամբողջ վտանգավորությունը բանվորների և գյուղացիների սոցիալական ազատագրման գործում: Չնայած իր վաղ շրջա-*

1900 թ. «Ռուս սոցիալ-դեմոկրատների արտասահմանյան միության» համագումարում «Աշխատանքի ազատագրություն» խումբը բոլորովին խզում է իր կապերը միության հետ։ Այսպիսով, 1900 թ. «Աշխատանքի ազատագրություն» խումբը փաստորեն միավորվում է Լենինի պլանով ստեղծվող «Իսկրա» թերթի խմբագրության հետ, որտեղ Պլեխանովը, Ակսելրոդը և Զասուլիչն ակտիվ մասնակցում են ՌՍԴԲՊ ծրագրի մշակմանը, նոր տիպի պարտիայի ստեղծման աշխատանքներին։

Լենինը ջերմորեն ողջունում է «Աշխատանքի ազատագրություն» խմբի միավորվելը «Իսկրա»-ի շուրջը։ «Այսպիսով,— գրում է Լենինը,— ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատների արտասահմանյան կազմակերպությունը, որը ղեկավարվում է «Աշխատանքի ազատագրություն» խմբի կողմից, վերջնականորեն միավորվեց այն կազմակերպության հետ, որը խմբավորվում է մեր լրագրի շուրջը։ Ինչպես և առաջ, «Աշխատանքի ազատագրություն» խումբը մեր հրատարակությունները վարելու գործում մերձավորագույն խմբագրական մասնակցություն է ունենում» (Երկեր, հ. 5, էջ 320)։

Պարտիայի II համագումարում, 1903 թ., երբ իրականացավ Լենինի պլանը և ստեղծվեց նոր տիպի մարքսիստական պարտիա՝ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիան, «Աշխատանքի ազատագրություն» խմբի գոյությունն անիմաստ դարձավ և փաստորեն այն դադարեցրեց իր գործունեությունը։ Այսպիսով, «Աշխատանքի ազատագրություն» խումբը հանդես եկավ պատմական այն ժամանակաշրջանում, երբ Լենինի արտահայտությամբ, Ռուսական սոցիալ-դեմոկրատիան ապրում էր դեռևս իր զարգացման սաղմնային շրջանը, երբ գոյություն ունեցող անջատ-անջատ սոցիալ-դեմոկրատական խմբերը պրակտիկ սերտ կապեր չունեին բանվորական շարժման հետ, երբ դեռևս Ռուսաստանում մարքսիզմը չէր տարածվել, երբ նույնիսկ տեսականորեն քայլեր չէին արվել սոցիալիզմը բանվորական շարժման հետ միաձուլելու ուղղությամբ։

Պլեխանովի «Աշխատանքի ազատագրություն» խումբը մարքսիզմի գաղափարների պաշտպանն ու առաջին պրոպագանդիստը հանդիսացավ Ռուսաստանում։ Նա առաջին լուրջ հարվածը հասցրեց մարքսիզմի գաղափարներին խորթ նարոդնիկական սուբյեկտիվ իդեալիստական հայացքներին, սկիզբ դրեց Ռուսաստանում քաղաքական-մարքսիստական պարտիա ստեղծելուն և առաջին քայլը կատարեց սոցիալիզմը բանվորական շարժման հետ միաձուլելու ուղղությամբ. այն թեորիապես հիմնեց սոցիալ-դեմոկրատիան։

Պլեխանովի «Աշխատանքի ազատագրություն» խումբն իր գոյության քսանամյա պատմությամբ, պատվավոր տեղ է գրավում ռուսական ռևոլյուցիոն բանվորական շարժման պատմության մեջ, մարքսիզմի գաղափարների հաղթանակի համար ռուսական սոցիալ-դեմոկրատիայի պայքարի պատմության մեջ։



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ԲՈՆՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԹՇՆԱՄԻ Է

Գերմանիայի զարգացման ուղին որոշիչ նշանակություն ունի միջազգային, հատկապես Եվրոպայում տիրող իրադրության համար։ Մեկ սերնդի կյանքի ընթացքում աշխարհն ականատես եղավ իր արյունահեղությամբ ու պատճառած ավերումներով հայտնի համաշխարհային երկու խոշորագույն պատերազմների։ Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ համաշխարհային պատերազմը սանձազերծեցին Գերմանիայի իմպերիալիստական շրջանները։ Թե՛ առաջին և թե՛ երկրորդ պատերազմներն ավարտվեցին նրա ագրեսիվ ուժերի պարտությամբ։

Նախկին հիտլերյան կայսրության փոխարեն այժմ գոյություն ունեն տրամագծորեն հակադիր ուղիներով զարգացող գերմանական երկու պետություններ՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան։ Բացի այդ, ԳԴՌ-ի տերիտորիայում՝ որպես կապիտալիստական կղզի, կանգնած է Արևմտյան Բեռլինը։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան ընթանում են միանգամայն հակադիր ուղիներով։ ԳԴՌ-ն պահանջում է դադարեցնել սպառազինությունների մրցավազքը և «սառը պատերազմը». Բոննը՝ արագացնել սպառազինումների մրցավազքը և բորբոքում է «սառը պատերազմ»։ ԳԴՌ-ն հանդես է գալիս հանուն ատոմային զենքի լրիվ ոչնչացման, Բոննը՝ դրանով բունդեսվերը սպառազինելու օգտին։ Առաջինն առաջարկում է, որ Արևմտյան Գերմանիան դուրս գա ՆԱՏՕ-ից, իսկ ԳԴՌ-ն Վարշավայի պայմանագրից։ Բոննի ռեժիմը ավելի ամուր է լծվում ՆԱՏՕ-ի մարտակառքին։ ԳԴՌ-ն պահանջում է հաշտության պայմանագիր կնքել Գերմանիայի հետ, իսկ Բոննի կլիկը կտրականորեն հրաժարվում է դրանից, որովհետև պայմանագիրը կխանգարեր Բոննի ռազմական նախապատրաստություններին։ ԳԴՌ-ն պահանջում է հրավիրել գերմանական երկու պետությունների կոնֆերանս, որը Գերմանիայի վերամիավորման առաջին կարևոր քայլը կհանդիսանար։ Բոննը արկածախնդրորեն փորձում է ՆԱՏՕ-ի ռեժիմը տարածել Գերմանիայի ամբողջ տերիտորիայի վրա։

Բոննի միլիտարիստները վախենում են մրցել ԳԴՌ-ի՝ տնտեսապես զարգացած և աճող սոցիալիստական պետության հետ։ Չէ՞ որ ԳԴՌ-ի էկոնոմիկան այժմ չորս անգամ ավելի արագ է զարգանում, քան Արևմտյան Գերմանիայինը։

ԳՍՄՊ-ի VI համագումարում, որը տեղի ունեցավ 1963 թվականի հունվարին, ընկ. Վալտեր Ուլբրիխտը, խոսելով ռեսպուբլիկայի ձեռք բերած նվաճումների և զարգացման հեռանկարների մասին, նշեց, որ ԳԴՌ-ն վերածվել է արդյունաբերական և գյուղատնտեսական զարգացած երկրի ու արագ քայլերով ընթանում է սոցիալիզմի ուղիով։ 1962 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ծավալը աճել է 7,4, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 9 տոկոսով։

Ավելի փայլուն հեռանկարներ են բացվում մոտիկ ապագայում։ 1964—1970 թթ. յոթնամյակի վերջում նախատեսվում է կապիտալ ներդրումների տարեկան ընդհանուր ծավալը հասցնել 28 միլիարդ մարկի՝ 1963 թվականի 16,8 միլիարդի դիմաց։ Նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 65 տոկոսով։ Այդ պլանով նախատեսվում են ծանր արդյունաբերության զարգացման ավելի բարձր տեմպեր։ Այդ հաջողությունները հանգիստ չեն տալիս ադենաուերներին ու շտրաուսներին, կրուպներին ու տիսսեններին, որոնք դատապարտվածների կատաղի չարությամբ քայքայիչ գործունեություն են ծավալում ԳԴՌ-ի դեմ։

## ՌԵՎԱՆՇԻՍՏՆԵՐԻ ԵՎ ՄԻԼԻՏԱՐԻՍՏՆԵՐԻ ԿԼԻԿԸ

Իմպերիալիստական պետությունների և, առաջին հերթին՝ ԱՄՆ-ի օգնությամբ, կոպիտ կերպով խախտելով Պոտսդամի համաձայնագիրը, գերմանական ռազմամոլները ԳՖՌ-ում վերականգնեցին իրենց այն խոշոր կոնցեռնները, ո-

պետք այս բացահայտ ու անսքող նիհիլիզմը։

Ինչպե՞ս թե, չէ՞ որ Ց. Խանզադյանը քննադատում է «Նոեմի»-դեկլարացիան հենց նրա նիհիլիզմի համար։ Ինչպե՞ս կարելի է դրանից հետո նրան նիհիլիստ համարել, կարող են նկատել ժողովածուն կազմողները։ Ճիշտ է, Ց. Խանզադյանը քննադատում է «Նոեմի» դեկլարացիան։ Նա գրում է. «Նոեմի... դեկլարացիան նոր արվեստի մասին... միանգամայն փոշիացնում, քամուն է տալիս ամբողջ հին գրականությունը և սրանով սրբագործում տգիտությունը այդ անպետք գրականության նկատմամբ» (էջ 112)։ Ամենից առաջ «Նոեմի» դեկլարացիան տգիտության արդյունք չէր, այլ բուրժուական աշխարհայեցողության դրսևորման մի ձև։ Ֆուտուրիզմի սրբագործում՝ ահա դեկլարացիայի հետապնդած նպատակը։ Իսկ ֆուտուրիզմը նույնացնել տգիտության հետ, նշանակում է թերագնահատել հակառակորդ գաղափարախոսությունը և փաստորեն հրաժարվել դրա դեմ լուրջ պայքար մղելուց։ Երկրորդ, մերժելով «Նոեմի» դեկլարացիայի քարոզած նիհիլիզմը, Ց. Խանզադյանը, ըստ էության, միաժամանակ իր պաշտպանության տակ է առնում դեկլարացիայի հիմնական սկզբունքը «ամբողջ հին գրականության» նկատմամբ, նրա ստեղծագործողներին հայտարարելով տգետներ։ Տարբերությունը «Նոեմի» և Խանզադյանի հարցադրումների միջև ձևական է։ Եթե Նոեմը «ամբողջ հին գրականությունը» դեն էր նետում, համարելով այն իր գաղափարախոսությամբ ու ձևով պրոլետարիատին խորթ մի բան, ապա Ց. Խանզադյանը խոսքով «հին գրականությունն» ընդունում էր, բայց նրա հեղինակներին հայտարարելով տգետներ, փաստորեն նույն եզրակացությանն է հանգում, որովհետև տգետները պիտանի գեղարվեստական երկեր ստեղծել չեն կարող և պրոլետարական գրականությունը տգիտության ժառանգությունը մերժել ու մերժում է։

Հավատո՞ւմ էր արդյոք Ց. Խանզադյանը պրոլետարական գրականության ստեղծմանը։ Հայտնի է, որ քսանական թվականներին այդ հարցերի շուրջ մեծ վեճեր էին լինում։ Կային մարդիկ, որոնք սխալ տեսակետներ էին պաշտպանում, հանդես էին գալիս նիհիլիզմի, վուլգար սոցիոլոգիզմի և նման անընդունելի դիրքերից։ Սակայն գրականության և արվեստի աշխատողների հիմնական մասսան ճիշտ ճանապարհի վրա էր և փնտրում էր ստեղծագործական նոր ձևեր, միաժամանակ պայքարելով մարքսիզմին խորթ գաղափարախոսությունների դեմ։ Փոխանակ երևույթի կոնկրետ վերլուծման հիման վրա մերժելու բացասականը, ընդունելու դրականը և աշխատելու օգնել նոր արվեստի ու գրականության ամրացման գործին, Ց. Խանզադյանը հանդես եկավ եղածի ժխտման հայտարարությամբ և հոռետեսական վերաբերմունքով դեպի այն մեծ աշխատանքը, որը կատարվում էր հիշյալ շրջանում, մեծամտորեն բոլորին տգետներ համարելով։

«Որոշված է ստեղծել նոր արվեստ...», հեգնորեն հայտարարեց Ց. Խանզադյանը, նկատի ունենալով պրոլետարական գրականության զարգացմանը նպաստելու համար կուսակցության ու պետության ձեռք առած միջոցները։ Նա գիտեր, իհարկե, որ որոշմամբ նոր արվեստ չի ստեղծվում, որ հայ պրոլետարական գրականության հիմքը դրված էր դեռ նախքան սովետական կարգերի հաստատումը Հայաստանում Հակոբ Հակոբյանի, Չարենցի, Արազու, Անշ. Վարդանյանի և ուրիշների կողմից։ Բայց որովհետև ըստ նրա հայ «գրողն ու տգետը հոմանիշ հասկացողություններ են», այդ հիման վրա նա գիտակցորեն անտեսեց կատարվածը, իսկ նոր ձեռնարկումները էլ բնորոշեց որպես «անզոր ջղաձգական փորձեր», որոնք ցանկալի արդյունքներ տալ չէին կարող։ Դեռ ավելին. նա գտավ, որ նոր գրականության ստեղծման ուղղությամբ արվող «տենդոտ պլտորումները... ծանր խորհրդածություններ են առաջ բերում»։ Բայց ինչո՞ւ։ Որովհետև Ց. Խանզադյանը նորին չէր հավատում, նա իր շուրջը միայն տգիտություն էր տեսնում և գտնում էր, որ պրոլետարական գրականության ու արվեստի ուղիները որոշել հնարավոր չէ։ «Բազմաթիվ հոդվածներ գրվեցին... որոնց հեղինակներն այս կամ այն կողմից մոտեցան նոր արվեստի, սֆինքսին, դատեցին, դատապարտեցին հին արվեստը, հրահանգեցին նոր ուղիներ, բայց երբեք, երբեք չպարզվեց, թե շոշափելի, կոնկրետ կերպով ի՞նչ են ուզում քննադատները, ո՞ւր են մղում նոր արվեստին ծառայելու, սպասարկելու պատրաստակամ գեղարվեստագետներին», հայտարարեց նա (էջ 110—111)։

Մենք արդեն ասացինք, որ քսանական թվականների գրականագետներից ոմանք, ինչպես, օրինակ, Սուրխաթյանը, որոշ հարցերում սխալվում էին։ Բայց եղանակ անողները դրանք չէին։ Լենինը կոմերիտմիության III համագումարում պարզորոշ սահմանել էր նոր կուլտուրայի զարգացման ուղիները։ Ա. Մյասնիկյանն այդ բանն արել և անում էր Հայաստանում։ Ց. Խանզադյանը Սուրխաթյանին քննադատելու անվան տակ փաստորեն մերժում էր ողջ մարքսիստական գրաքննադատությունը, հայտարարելով նրան հանցապարտ, «մեր երիտասարդ բանաստեղծներին» «դեպի անդունդը գլորող» «նոր պոեզիայի «վակխանալիա» ստեղծելու համար (էջ 111)։ Բայց ինչպե՞ս եղավ, որ «անդունդ չգլորվեցին» Մահարին ու Զարյանը, Նորենցն ու Ալազանը, Սարյանն ու Արմենը և մեր օրերի շատ աչքառու գրողներ, որոնք այդ շրջանում դեռ երիտասարդներ էին։ Առհասարակ քսանական թվականների մարքսիստական գրաքննադատությունը ո՞ւմ է «անդունդը գլորել», կարո՞ղ են արդյոք Խանզադյանի գրածները հիմնավորելու համար, թեկուզ մի օրինակ բերել նրանք, ովքեր անվերապահորեն Ց. Խանզադյանի ասածները հրամցնում են մեր «նոր սերնդի գրականագետներին»։

Ց. Խանզադյանի բացասական վերաբերմունքը քսանական թվականների մարքսիստական գրականագիտության նկատմամբ հետևանք էր այն բանի, որ նա չէր տեսնում այն նորը, որը ստեղծվել և ստեղծվում էր գրականության մեջ։ Ռուսաստանում էլ, գրում է նա, «հինգ տարի աղմկեցին նոր արվեստի մասին, բազմաթիվ փորձեր արին ստեղծագործելու, մարմնացնելու այդ արվեստը՝ գեղարվեստական արձակի թե ոտանավորի մեջ։ Հինգ տարվա ընթացքում հարյուրավոր արձակագիր և բանաստեղծ գրողներ արտադրեցին թղթի ահագին կույտեր, մի ընդարձակ գրականություն։ Հաճախ միանգամայն ձեռնահաս, շնորհալի մարդիկ։ Եվ այնուամենայնիվ...» արդյունքը՝ ոչինչ (էջ 111)։ Հետևաբար հարցն այն չէ, թե նոր կուլտուրայի մշակները տգետներ են, այլ այն, որ այդ կուլտուրան ինքնին մի «սֆինքս» է, անվերծանելի մի առեղծված, որի ստեղծման համար «միանգամայն ձեռնհաս, շնորհալի մարդկանց» մղած պայքարն էլ որևէ դրական արդյունք տալ չի կարող։ Սա է Խանզադյանի միտքը։ Բայց մի՞թե նոր գրականության լավագույն նմուշներ չէին Իվանովի Զրահապատ գնացքը, Ֆուրմանովի Չապաևը, Սերաֆիմովիչի Երկաթյա հեղեղը, Չարենցի Ամբոխները խելագարված, Լեոնովի ռոմանները, Դեմյան Բեդնու, Մայակովսկու և շատ ուրիշների գրվածքները, որոնք ստեղծվել էին հենց այն հինգ տարիներում։ Մի՞թե կարելի է այս ու նման փաստերն անտեսելուց հետո ճիշտ դատել սովետական արվեստի ու դրա զարգացման մասին։ Իհարկե, ո՛չ։ Ուստի սխալ են Հ. Ղանալանյանը և Ա. Ինճիկյանը, երբ Խանզադյանի այս գործերը հանձնարարում են որպես «նոր սերնդի» համար ուսանելի գործեր։

Իսկ ի՞նչ կարելի է ասել հայ հեղինակներին Խանզադյանի տված բնութագրումների մասին։ Արդյո՞ք դրանք «լավագույններից» են եղածների մեջ։ Վերցնենք, օրինակ, նրա ստեղծած Ա. Մյասնիկյանի դիմանկարը, որի վրա հատուկ եռանդով մատնանիշ են անում ժողովածուի կազմողները և այն գրախոսող Ս. Աղաբաբյանը։ Ամենից առաջ տարբերություն կա Ց. Խանզադյանի կենդանության ժամանակ լույս տեսած Մյասնիկյանի մասին գրած նրա գրքույկի և ժողովածուում տեղավորվածի միջև։ Խմբագրական ամենակարող գրիչն այս դեպքում էլ մեծ դեր է կատարել, կրճատելով մինչև իսկ ամբողջ էջեր, որոնք գրվել են Ա. Մյասնիկյանին վարկաբեկելու համար։ Չնայած այդ օպերացիաներին, այնուամենայնիվ կազմողներին չի հաջողվել հիմնովին փոխել Խանզադյանի գրածը։

«Նոր սերնդի» ուսուցիչ հայտարարված Ց. Խանզադյանը հավաստացնում է, որ իբրև հոգեբանական տիպ Ա. Մյասնիկյանը գերազանցապես հակափիլիսոփայական էր։ Ամենալուրջ ուսումնասիրությամբ ծանոթանալով մարքսիզմին, նա գրեթե բոլորովին անտարբեր էր դեպի այդ վարդապետության փիլիսոփայական կողմը (էջ 118)։ Կարո՞ղ էր արդյոք մարքսիզմը լավ գիտենալ, բայց լինել «բոլորովին անտարբեր» դեպի այդ աշխարհայեցողության «փիլիսոփայական կողմը»։ Դա աբսուրդ է։ Իրականում Ա. Մյասնիկյանը մարքսիստական փիլիսոփայության ոչ միայն քաջատեղյակ անձնավորություն էր, այլև դրա հետևողական կիրառողը ժամանակի բազմաթիվ հարցերի ուսումնասիրության մեջ։ Այդ են ապացուցում նրա աշխատությունները Նալբանդյանի, ներկուսակցական պայքարի հարցերի, գրականության, ազգային խնդրի մասին և այլն։ Ա. Մյասնիկյանը սովետահայ փիլիսոփայական մտքի լավագույն ներկայացուցիչներից մեկն է։

Հայտարարելով Ա. Մյասնիկյանին մարքսիստական փիլիսոփայության նկատմամբ «անտարբեր» մի անձնավորություն, Ց. Խանզադյանը եզրակացնում է՝ թե իբր նա «հակված էր կյանքի բազմաբարդ երևույթները պարզացման ենթարկելու, չնշմարելով նրբությունները» (էջ 118)։ Իսկ փաստե՞րը։ Դրանք ճիշտ հակառակն են ապացուցում։ Զինված լինելով մարքսիզմ-լենինիզմով, Ա. Մյասնիկյանը կարողանում էր կյանքի այնպիսի նրբություններ նկատել ու տեսականորեն իմաստավորել, որոնք շատ քչերին էին մատչելի։ Հենց այդ հանգամանքն էր, որ հնարավորություն տվեց նրան դառնալու մեր օրերի պետական մեծագույն գործիչներից մեկը։ «Կյանքի բազմաբարդ երևույթները պարզեցնող» անձնավորությունը պետական մեծ գործիչ դառնալ չէր կարող, որովհետև նման գործչից պահանջվում է շուտ ու ճիշտ կողմնորոշում, որը կապված է կյանքի նրբությունների խոր ըմբռնման հետ։

Ց. Խանզադյանը վատաբանել է Ա. Մյասնիկյանին, որպես իր քաղաքական հակառակորդի։ Նա գրել է. «Ես խորապես վիրավորվում էի, որ Մյասնիկյանը, իր հակա-

ունեցած միջոցների միջև անհամապատասխանություն կա, այսինքն՝ միջոցներն անբավարար են հասնելու այն բանին, ինչ որ ինքն անհրաժեշտ է համարում։ Այդ երևույթը հատուկ է մասնավոր սեփականատիրության վրա հիմնված հասարակություններին։ Այդ պատճառով էլ ասել, թե «հոռետեսության ակունքներն աշխարհում» «երբեից» չեն ցամաքելու, նշանակում է հրաժարվելով պատմականությունից, կոմունիստական հասարակության մարդուն, իր հոգեբանությամբ և ըմբռնումներով, նույնացնել նախորդ հասարակությունների մարդկանց ու նրանց ըմբռնումների հետ և կամ թե չէ չհավատալ կոմունիզմի հաղթանակին։

Ինչպես տեսնում ենք Խանզադյանը ստեղծագործական մարքսիզմի հետևորդ չէր. նա առհասարակ մարքսիստ չէր։ Խանզադյանը եղել է «Սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ», այսինքն՝ սպեցիֆիկյան կազմակերպության անդամ, նրա պարագլուխներից մեկը։ Այդ մասին ասում է ինքը՝ Խանզադյանը Ա. Մյասնիկյանի մասին գրած իր գրքույկում։ Ստ. Շահումյանն այդ կազմակերպությունը մարքսիստական չի համարել։ Անշուշտ, սկզբնական շրջանում դրան անդամագրվածների մեջ կային նաև մարքսիստորեն մտածողներ, բայց նրանք շուտով ո՛չ միայն հեռացան սպեցիֆիզմից, այլև դարձան դրա համոզված հակառակորդները։ Մեր մամուլում փորձեր արվեցին վերանայելու Ստ. Շահումյանի այդ գնահատականը, բայց հանդիպեցին արդարացի հակահարվածի։

Հիմք կա՞ արդյոք, նորից սպեցիֆիկյան կազմակերպության արդարացման հարցը դնել նրա պարագլուխներին ստեղծագործական մարքսիզմի ներկայացուցիչներ հայտարարելով։ Մեր կարծիքով դրա համար և ոչ մի հիմք չկա։ Փաստերը, ինչպես տեսանք, այդ մասին են վկայում։

ՀԵՆՐԻ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

---

## ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

Մեր ամսագրի անցյալ համարում տպագրված «ԱՐՏԱՌՈՅ ՍԽԱԼՆԵՐՈՎ» նամակի կապակցությամբ «ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ» թերթի խմբագրությունը հայտնում է, որ նամակում մատնանշված փաստերը լրիվին համապատասխանում են իրականությանը։

Նամակը քննարկված է խմբագրության կոլեկտիվում և միջոցառումներ է մշակված խմբագրության աշխատակիցների պատասխանատվությունը բարձրացնելու ու թերթի սրբագրության վիճակը բարելավելու համար։




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05253 Պատվեր 2314 Տիրաժ 9100 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 28/VIII 1963 թ.

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԺԱՅՌԱՀԱՏԻՉ

Սովորաբար ժայռերի մեջ խրամուղի (траншей) բացում են կամ պայթեցումների, կամ էլ հորատող մուրճերի միջոցով։ Առաջին եղանակը միշտ չէ, որ հնարավոր է լինում, իսկ երկրորդը՝ աշխատատար է և քիչ արտադրողական։ Բաքվեցի ինժեներ Ի. Իսկենդարովը ստեղծել է ինքնագնաց ժայռահատիչ մի ագրեգատ։ Թրթուրավոր տրակտորներին կցված են ներհատիչ մեքենայի մեխանիզմներ, իսկ տրակտորի առջևում տեղակայված է բուլդոզերի շերտամղիչ։ Սկզբում տրակտորը շերտամղիչով մաքրում է մակերեսի հողաշերտը, և ապա միացվում է կտրիչ մեխանիզմը և ժայռի վրա փորվում երկու զուգահեռ ակոս։ Ակոսների միջև ստեղծված քարե նեղ ժապավենը ավտոկրանի միջոցով բաժանում են քառակուսիների և հատուկ բռնիչների օգնությամբ հանում և շարում են խրամուղու կողքերին։

Ժայռահատիչ մեքենայով խրամուղի փորելը շատ ավելի էժան ու արագ է լինում, քան պայթեցման եղանակով։ Այս ագրեգատը մեկ հերթափոխում կտրում է ավելի քան 100 մետր երկարության և 2,5 մետր խորության խրամուղի։

### ԳԵՏՔԵՐ

Հակահրդեհային ազդանշանի գործիքների հիմքում ընկած են հրդեհի անփոփոխ ուղեկիցները՝ ծուխը, բոցը և տաքությունը։ Ելնելով տեղի պայմաններից, սարքավորում են այս կամ այն գործիքը։ Դրանցից ամենատարածվածը ջերմայինն է։ Արդեն անունն ինքը ցույց է տալիս, որ այն աշխատում է ջերմության բարձրացմամբ։ Ենթադրենք, թե գործիքը դրված է 40° տաքության վրա։ Հենց որ շենքի ներսում օդի ջերմաստիճանը հասնում է այդ մակարդակին, հնչում է տագնապի ազդանշանը։ Լուսային գործիքն ընկալում է բացահայտ բոցից առաջացած ճառագայթները։ Բավական է, որ կրակ սկսվի, գործիքն անմիջապես հաղորդում է այդ մասին։ Ծխային գործիքը հարմարեցված է ծխի տարբեր խտություններին։ Այն կարող է արձագանքել աչքի համար անտեսանելի ծխին։

### ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆ ԿՅԱՆՔ Է ՓՐԿՈՒՄ

Սովետական հայտնի վիրաբույժ, պրոֆեսոր Ն. Մ. Ամոսովին հաջողվեց սրտի միտրալային կափույրը (клапан) ամբողջովին փոխարինել արհեստական նյութով։ Պրոտեզը պատրաստեցին տեֆլոնի արհեստական նյութից՝ չժանգոտվող մետաղալարի կմախքով։

Այս վիրահատման նախապատրաստումը տևել է երկուս ու կես տարի, որովհետև կափույրների նյութերի պակասը մինչև այժմ համարվում է դժվարին պրոբլեմներից մեկը։

Եվ ահա ձեռքի վրա է այն կափույրի երկվորյակը, որը դրված է տասնհինգամյա Ն. Լեսայի սրտի մեջ։ Երբ այդ կափույրը շուրթերով թույլ փչեն, ապա կոկոնի թերթիկների նման կբացվեն երեք փեղկեր։

Վիրահատումից առաջ հիվանդի դրությունը արտակարգ ծանր էր, վիրահատությունը խիստ դժվար, որը պահանջում էր առավելագույն ճշտություն։ Կափույրը հիվանդի սրտի մեջ ամրացվեց քանշորս հանգուցային կարերով։

### ԿՈՄԲԻՆԱՑՎԱԾ ԱՏԱՄՆԱՊՐՈՏԵԶԻ ՏԱՐՐ

Հանովի ատամնապրոտեզներն ամրացնելու համար առաջարկված է մի շատ հետաքրքիր կոնստրուկցիա։ Այն բաղկացած է կլոր կոճակագլխիկ ունեցող գամիկից, որը ցեմենտով ամրացվում է ատամի ծակված արմատին։ Ատամի շապիկը մինչ այդ խարտոցվում է։ Գամիկի վրա դրվում է պողպատե փոքրիկ թասիկ, որի ներսում կան երկու զսպանակ։ Պրոտեզը հագնելիս թասիկն ամուր կրպչում է գամիկի գնդիկային գլխիկին և պրոտեզն անշարժ պահում իր տեղում։ Այդպիսի պրոտեզների ամրացման համար առանձնապես պիտանի են հիմնական ատամների արմատները։ Բազմամյա դիտումները հաստատել են, որ այն ատամնախոռոչը, որտեղ ամրացված է «զսպանակային խարիսխ», չի գրգռվում։

Պրոտեզների ամրացման այս նոր մեթոդը կիրառվում է ինչպես վերին ծնոտի, այնպես էլ ներքին ծնոտի համար։

ԳԻՆԸ 25 Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԲԺՇԿԱԿԱՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՋԵՐՄԱՉԱՓԵՐ

*Վերջին ժամանակներս բժշկության մեջ հաճախակի են օգտագործվում էլեկտրական ջերմաչափերը, որոնք մեծ առավելություն ունեն սնդիկայինի նկատմամբ։ Ամենից առաջ դրանց ջերմազգայուն էլեմենտի շատ փոքր ծավալը հնարավորություն է տալիս կատարել այնպիսի չափումներ, որոնց մասին մինչև այժմ երազել անգամ չէր կարելի. օրինակ՝ հիվանդ ատամի ներքին խոռոչի ջերմության չափումը։*

*Էլեմենտի արտակարգ փոքր ծավալը միայն աննշան չափով է փոփոխում մարմնի այն մասի ջերմաստիճանը, որտեղ կատարվում է չափումը, իսկ սնդիկային ջերմաչափը միշտ իրականից ցածր է ցույց տալիս։ Էլեկտրական ջերմազգայուն էլեմենտի օգնությամբ ջերմությունը չափվում է մի քանի վայրկյանում։ Իսկ այդ հնարավորություն է տալիս չափելու այնպիսի արագընթաց ջերմային պրոցեսներ, ինչպես, օրինակ, շնչելիս և արտաշնչելիս քթի ջերմության փոփոխությունը։*

*Ռետինե բարակ խողովակով սարքավորված ջերմազգայուն էլեմենտը հեշտությամբ կարելի է իջեցնել մարդու ստամոքսը և դրա օգնությամբ հայտաբերել այն խոցերն ու բորբոքումները, որոնք ռենտգենյան նկարները դեռևս ցույց չեն տալիս։ Այդ զոնդը արտակարգ օգտակար է նարկոզի տակ կատարվող վիրահատումների ժամանակ, հատկապես հիվանդի մարմնի արհեստական սառեցում կատարելիս։ Նման դեպքերում խիստ կարևոր է իմանալ մարմնի ներսի ջերմությունը, որովհետև որոշակի մակարդակից ցածր ջերմության դեպքում կարող են առաջանալ վտանգավոր բարդություններ։*

*Եթե ջերմազգայուն էլեմենտին միացնենք ինեկցիոն ասեղ, դրա օգնությամբ կարելի է որոշել նույնիսկ այն բորբոքումները, որոնք դեռևս մարմնի ջերմության բարձրացում չեն առաջացնում։*

## ՆՅՈՒԹԻ ՄԱԳՆԻՍԱՅԻՆ ԴԱՇՏ

*Կալիֆոռնիայի համալսարանի մի խումբ հոգեբաններ հայտաբերել են նյարդի մագնիսային դաշտ։ Այն առաջ է գալիս նյարդի գրգռումից մոտավորապես 0,005 վայրկյան հետո։ Մինչև այժմ այդ երևույթը հայտնի չէր։ Գրգռված նյարդում իմպուլսը, հավանաբար, կապված է մոլեկուլների դիրքի փոփոխման հետ։ Հենց այս էլ, ըստ երևույթին, պատճառ է դառնում մագնիսական դաշտի առաջացման։*

## ՇԵՆՔ՝ ՄԻ ՔԱՆԻ ԺԱՄՈՒՄ

*Դանիացի Պաուլ Կաղովիուսը առաջարկել է թեթև կառույցների շինարարության նոր մեթոդ։ Կոնստրուկցիայի հիմքում դրված է շատ հասարակ, բայց դարձակներ ունեցող մի օրիգինալ միացնող հարմարանք։ Դարձակներին հագցըվում են կառույցի կմախքը կազմող պողպատե խողովակներ, որոնց օգնությամբ շատ արագ կարելի է պատրաստել ցուցահանդեսային գմբեթաձև տաղավարներ։*

*Մոնտաժված կմախքը ծածկվում է սինթետիկ ամուր նյութով, իսկ հատակը պատրաստվում է մետաղյա ստանդարտ տախտակներից, և շենքը պատրաստ է։ 6,34 մետր բարձրություն և 300 քառակուսի մետր մակերես ունեցող տաղավարի համար պահանջվում է 7 հազար կարճ խողովակ և 2 հազար կցիչ հարմարանք։ Նման շենքի կառուցումը տևում է մի քանի ժամ։ Միակ գործիքը թեթև մուրճն է։ Կցվածքների միացումներն այնքան ամուր են, որ ըստ ցյատարարի կարելի է այդ եղանակով կամուրջներ կառուցել։*

